Mserean, G

ՆՈՐ ԴԱՍԱԳՐՔԵՐ

Hamarot dil abanutiun...

361

ՀԱՄԱՌՕՏ

# ԴԻՑԱԲԱՆՈՒԹԻՒՆ

ՅՕՐԻՆԵՑ

Գ. ՄՍԵՐԵԱՆ




ԻԶՄԻՐ

ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ Գ. ՄՍԵՐԵԱՆ

1878

## ՀԱՄԱՌՕՏ

# ԴԻՑԱԲԱՆՈՒԹԻՒՆ

---

Դիցաբանութիւնը հեթանոսութեան աստուածներու, կիսաստուածներու և դիւցազուններու առասպելախառն պատմութիւնն է։

Դիցաբանութեան ծագումի վրայ խօսիլ մեր նպատակէն դուրս ըլլալով՝ բաւական կը համարինք ըսել որ նախապատմական ժամանակներ հնդկագերմանիկ ցեղերէ սկսած՝ և տեղական պայմաններու համեմատ փոխուելով, Ասորեստան, Եգիպտոս, Փիւնիկէ ու ասկէ ալ Յունաց մէջ մտած է՝ որոնցմէ առած են Հռոմէացիք առանց զգալի փոփոխութեան։

Դիցաբանութիւնը չորս մասի կը բաժնուի, առաջինը՝ Երկնային, երկրորդը՝ Ծովային, երրորդը՝ Երկրային ու չորրորդը՝ Դժոխքի աստուածներու վրայ կը խօսի։ Հինգերորդ մաս մ'ալ կայ որ Յունաց պատմութեան առասպելական ժամանակները կը վերաբերի։

# ԵՐԿՆԱՅԻՆ ԱՍՏՈՒԱԾՆԵՐ

## ԿՐՕՆՈՍ, ՅԱՆՈՍ

Ամէն բանէ յառաջ Քաոսը կար, տձև ու կոշտ զանգուած՝ ուր ամեն տարրերը կը գտնուէին խառն 'ի խուռն:

Ետքէն երբ ստեղծագործութիւնը սկսաւ՝ Ուրանոս(1) իր քրոջը Էստայի(2) հետ ամուսնանալով երեք զաւակ ունեցաւ, Տիտան, Կրօնոս(3) կամ Սաթուրնոս և Ռէա կամ Կիւբելա: Թէև Տիտան անդրանիկն էր՝ բայց Կրօնոս խոստանալով անոր որ իր արու զաւակները չապրեցընէ՝ անդրանկութեան իրաւունք ստացաւ, ու իր հայրը գահընկեց ընելով Կրետէի վրայ թագաւորեց:

Կրօնոս առաջին աստուածն եղաւ, որու պարսիկները Զրուան և հռոմայեցիք Սաթուրնոս անունը տուած են:

Կրօնոս իր խոստումին հաւատարիմ մնալով զաւակները կուլ կու տար և արդէն իր Վեստա անուն անդրանիկ աղջիկը, Դեմետրը, Հերան, Պղուտոնն ու Պոսիդոնը կլլած էր՝ երբ իր կինը Ռէա վերջին

(1) Ուրանոս՝ երկին. Սանսքրիթ՝ վէրանա, այսինքն վերին:
(2) Կէօա՝ Երկիր:
(3) Մեր կրօն բառը ասկէ եկած կը կարծուի. Կրօնոս յունարէն տարի կը նշանակէ:

զաւակը ազատել ուզելով՝ գաղտուկ տեղ մը քաշուեցաւ․ հոն ծնաւ զԱրամազդ և անոր տեղ քար մը ներկայացուց իր էրկան․ Կրօնոս այս քարը կլլեց ։

Ռէա զԱրամազդ Կրետէի քուրմերուն յանձնեց և Ամալթէա այծը զանի սնոյց․ քուրմերը Արամազդի օրօրին բոլորտիքը պարելով իրենց նիզակներով վահաններուն կը զարնէին որպէս զի Կրօնոս անոր ձայները չլսէ ։

Տիտան՝ Կրօնոսի եղբայրը տեսնելով որ իր որդիքը թագաւորութենէ անժառանգ պիտի մնան, իր եղբօրը դէմ պատերազմ բացաւ և անոր յաղթելով՝ զան իր Ռէա կնոջը հետ բանտարկեց ։ Սակայն Արամազդ որ չափահաս եղած էր իր մայրն ու հայրը բանտէն ազատեց ։ Ասոր վրայ Կրօնոս իր կնոջ խաբէութեան ներեց ։ Ետքը Արամազդ եղբայրներ ունենալ ուզելով՝ իր հօրը ըմպելի մը խմցուց որով Կրօնոս նախ Արամազդայ տեղ կլլած քարը՝ ու յետոյ Վեստան, Դեմետրը, Հերան, Պղուտոնը և Պոսիդոնը փսխեց ։ Բայց Կրօնոս Ճակատագրէն իմացած ըլլալով որ բանտէն ելածին պէս՝ Արամազդ իր գահը պիտի յափշտակէ, անոր դէմ պատերազմ բացաւ ։

Արամազդ իր եղբարց հետ միանալով Կրօնոսին յաղթեց, որովհետև Կիկլոպները իրեն համար շանթը, Պղուտոնին համար սաղաւարտ մը՝ ու Պոսիդոնին համար երեքժանի մը շիներ էին։ Կրօնոս Իտալիա քաշուեցաւ ուր կը թագաւորէր Յանոս՝ որ ետքէն աստուածի կարգ անցաւ։ Յանոս մեծ սիրով ընդունեցաւ զինքը։ Ասոր փոխարէն Կրօնոս իմաստութիւն

չնորհեց անոր՝ որով նա անցեալը չէր մոռնար և ապագան կը դուշակէր. այս պատճառաւ Յանոս երկու դէմքով կը նկարագրուի, մէկ ձեռքը գաւազան՝ ճամբաները պահելուն, և միւսը բանալի մը՝ դուները հնարած ըլլալուն համար: Զափազանց խաղաղութեամբ թագաւորելուն՝ խաղաղութեան աստուած էր Յանոս, և Նումա Բոմբիլիոս՚ի պատիւ ասոր պղնձէ տաճար մը շինեց՝ որուն դուները պատերազմի ատեն բաց՝ ու խաղաղութեան ատեն գոց էին: Տարւոյն առաջին ամիսը Յանոսի անունով Յունուար ըսուեցաւ, իբրև թէ տարւոյն դուռը ըլլալուն՝ և տասներկու ամիսներու համեմատ՝ իր տաճարին մէջ տասներկու բագին կար:

Յանոս և Կրոնոս մէկտեղ թագաւորեցին Իտալիայի վրայ. Կրոնոս այն տեղի ժողովուրդը կրթեց ու անոնց օրէնքներ տուաւ. Կրոնոսի թագաւորութեան ժամանակ մարդիկ այնչափ երջանիկ եղան որ նոյն ժամանակը Ոսկեդար կը կոչուի, անմեղութեան դար՝ որ երկիրը առանց մշակութեան անոնց պիտոյքը կը բերէր. ասոր յաջորդող դարերը Արծաթի, Պղնձի և Երկաթի դարեր ըսուեցան մարդկանց՝ երթալով գէշնալուն համար: Ոսկեդարու յիշատակը անմոռաց պահելու նպատակով հռոմայեցիք Սաթուրնական անունով տօներ հաստատեցին զորս դեկտեմբեր ամսին մէջ կը կատարէին. ասոնք ծայրայեղ ազատութեան և խնդութեան օրեր էին ուր տէրերը իրենց գերիներուն կը ծառայէին, ամեն աշխատութիւն կը դադրէր, մարդիկ իրարու նուէր կը ղրկէին, սովորութիւն՝ որ մինչև հիմա մնացած է կաղանդին օրը:

Թէև Կրօնոս Արամազդի հայրն է, բայց իբրև ամենէ մեծ աստուածը չնկատուիր, և իր պաշտօնը նոյնքան տարածուած չէր։ Մանաւորապէս Հռոմի ու Կարդագինէի մէջ յարգի էր՝ ուր մարդազոհեր կը նուիրէին իրեն։

Կրօնոս տկարացած ծերունիի մը դէմքով կը նկարագրուի, մէկ ձեռքը մանգաղ մը և միւսը աւազնոց մը՝ որ ժամանակը կը ցուցընէ՝ ժամանակի աստուածը ըլլալուն համար։

Կրօնոսի կինը՝ Ռէա կամ Կիւբեղէ՝ աստուածներէ շատերու մայր ըլլալուն՝ ամենամայր ըսուած է և գլուխը աշտարակաձև թագով մը կը նկարագրուի առիւծներով լծուած կառքի մը մէջ նստած։

Խստա՝ Կրօնոսի մայրը՝ այսինքն երկիրը, կը նկարագրուի կնոջ մը նման և ձեռքը սկուտեղ՝ կամ թմբուկ մը բռնած։

## ԱՐԱՄԱԶԴ, ՀԵՐԱ

Դիոս կամ Արամազդ (1) իր եղբարց օգնութիւնով Կրօնոսը գահընկեց ընելէ ետքը՝ զաշխարհ անոնց հետ բաժնեց. ինքը երկինքը առաւ, ծովը Պոսիդոնին տուաւ ու դժոխքը Պղուտոնին։ Բայց Էստայի զաւակ հսկաները՝ զինքը վար առնել ուզեցին և համարձակեցան երկնքին մէջ զանի պաշարել։ Մինչև անոր հասնելու համար՝ Օսա լեռը Պէլիոնին վրայ հանեցին ու անոր վրայ ելլելով երկինքը ժայռեր ու բոցավառ ծառեր կը նետէին։

(1) Սանսքրիտ՝ ահուրա մազդա, այսինքն՝ հայր իմաստութեան։

Արամազդ բոլոր աստուածներն ու դիցուհիները իրեն օգնութեան կանչեց։ Ովկիանու ու Թէթիսի աղջիկը՝ Ստիքս ամենէն առաջ հասնելուն համար իբրև վարձատրութիւն, Արամազդ որոշեց որ Ստիքսի անունով եղած երդումը անբռնաբարելի ըլլայ։ Բագոսի, Աթենասի ու Հերքիւլէսի քաջութիւնով հսկաները յաղթուեցան։

Արամազդ շատ կիներ ունեցաւ, որոնց մէջ ամենէ երևելին էր իր քոյրը Հերա։ Բազմաթիւ զաւակներ ալ ունէր, որոնց գլխաւորներն են Քասթօր և Պօլիւկտիս, Մինոս և Ռատամանտ, Արքաս, Պեղասգոս, Սարբէտոն, Արգոս, Հերքիւլէս, Ամփիոն, Պէրսէոս, Դեւկալիոն, Դարդանոս, Պրոզէրբին, Ինը մուսաները, Արէս, Հէրմէս,, Ապողոն, Արտեմիս, Աստղիկ, Աթենաս, Բագոս։

Արամազդ աստուածներու տէրը կը համարուէր, ամենամեծ, ամենաբարի, ամպրոպային և անյաղթելի ածականները կը տային իրեն, և երբեմն մասնաւորապէս պաշտուած տեղերու անուններն ալ կը կցէին, երբեմն Ողիմպեան Արամազդ, երբեմն Կապիտոլեան և երբեմն Ամմոնեան. գահի մը վրայ նստած կը նկարագրուէր, մէկ ձեռքը արքունի գաւազան և միւսը շանթեր բռնած, ոտքերուն տակ թևատարած արծիւ մը։

Հերա կամ Յանոն՝ ինչպէս որ ըսինք Արամազդի քոյրն ու կինն էր։ Արամազդ զայն իրեն կնութեան առնելու ատեն՝ Հերմէսի յանձնեց որ ամեն աստուածները, զմարդիկ և կենդանիները հրաւիրէ։ Հրաւէրն ընդունեցան ամենքն ալ՝ բաց 'ի Քելոնէ յաւերժահարսէն որ գետի մ'եզերքը կը բը-

Ճանկէր. Հերմէս զանի պատժելու համար՝ տնա-կովը մէկտեղ գետին մէջ նետեց ու զայն կրիայի փոխեց:

Հերա և Արամազդ սիրով չապրեցան, բանաս-տեղծներու ըսածին նայելով Հերա նախանձոտ ու գէշ բնութիւն մ'ունէր. կը պատմուի որ օր մը բարկանալով Ողիմպոսէն հեռացաւ ու Եւբէ կղզին քաշուեցաւ. ատոր վրայ Արամազդ իր կինը գտնելու համար՝ արձան մը հարսի հագուստով հագուեցուց ու կառքով Պլատէի փողոցները պը-տըտցուց: Հերա լսածին պէս որ ուրիշ կին մ'իր տեղը պիտի անցնի՝ պահուած տեղէն կ'ելնէ կառ-քին կը մօտի և բարկութեամբ հարսին հագուստը կտոր կտոր ըրած ատեն՝ կը տեսնէ որ արձան մ'է, ան ու իր ամուսնոյն կը ներէ:

Ուրիշ անգամ մ'ալ Արամազդ իր կնոջը հետ ունեցած կռիւներէ ձանձրացած՝ զանի երկնի ու երկրի մէջտեղ կախեց ոսկի շղթայով մը՝ և կից մը տալով Ողիմպոսէն վար գլտորեց Հեփեստէսը որ զանի ազատել ուզած էր:

Հերա չորս զաւակ ունեցաւ, Հեփէ, Աստղիկ, Լուսին և Հեփեստէս: Հերա դահի վրայ նստած կնոջ մը պատկերով կը նկարագրուի, մէկ ձեռքը արքունի գաւազան, միւսը իլ մը, գլուխը թագ մը և ոտքին տակ սիրամարգ. սա մասնաւորապէս յարգուած էր Սամոսի, Արկոսի և Կարթագինէի մէջ:

## ԱԹԵՆԱՍ կամ ՊԱԼԼԱՍ

*Աթենաս՝ Արամազդին ու իմաստուն Մէթիսի աղջիկն էր։ Արամազդ զՄէթիս յղութեան ատեն կլլեց որպէս զի իրմէն աւելի խելացի զաւակ մը չծնի. բայց կլլածին պէս՝ սաստիկ գլխի ցաւ մ՚զգաց։ Հեփեստոս իր հօրը գլխի ցաւը դադրեցնելու համար՝ կացինի հարուածով մ՚անոր գլուխը պատռեց, ուրկէ Աթենաս դուրս ելաւ բոլորովին զինուած։ Յետոյ Աթենաս հսկաներու պատերազմին մէջ հօրը օգնութեան երթալով՝ իր քաջութեամբ երևելի եղաւ ու աստուածներու խումբին մէջ նշանաւոր տեղ մը բռնեց։*

*Աթենաս միայն պատերազմը չէր սիրեր՝ այլ և գեղարուեստները՝ ու կ՚ըսեն թէ սրինգը ինքը հնարած է. բայց օր մ՚որ ան գործիքով կը զուարճանար՝ գիտեց որ Հերա ու Աստղիկ իր վրայ կը խնդային և աղբիւրի մը մէջ նայելով տեսաւ որ սրինգ ածելու ատենը քիթը բերանը ծռելուն համար էր, անոր վրայ սրինգը նետեց ու մէյմ՚ալ ձեռք չառաւ։*

*Աթենաս թէև ամեն բանի մէջ ճարտար՝ բայց Լիւդացի Իդմոնի Արաքնէ աղջիկը իր սեռին վերաբերող գործերու մէջ անոր հետ մրցելու համարձակեցաւ և իրօք անորմէ ճարտար գտնուեցաւ։ Ասոր վրայ Աթենաս բարկանալով իր մագուկը անոր գլխին նետեց։ Արաքնէ աս նախատինքին չկրցաւ դիմանալ ու ինքզինքը կախեց. աստուածները իր վրայ գթալով՝ զինքը սարդի փոխեցին։*

*Պոսիդոն ալ Աթենասի հետ վէճ մ՚ունեցաւ. Յու-*

նաստանի գլխաւ որ մէկ քաղքին անուն դնելու առթիւ, վասն զի Աթենաս ինքը կ՚ուզէր դնել այդ անունը։ Գործը դատի ընկաւ ու աստուածները որոշեցին որ երկուքնէն ո՛վ որ աւելի պիտանի բան մը հնարէ՝ ան իրաւունք ունենայ այն անունը դնելու։ Պոսիդոն՝ իր երեքժանիին մէկ հարուածովը ձի մը հանեց գետնէն՝ ու Աթենաս իր նիզակի մէկ հարուածովը ձիթենի մը։ Յաղթանակը Աթենասի մնաց։

Աթենաս գեղեցիկ կնոջ մը պատկերով կը նկարագրուի, գլուխը սաղաւարտ և անոր վրայ բու մը. մէկ ձեռքը նիզակ՝ և միւսը Էգիս ասպարը, որու վրայ Մէտիւսի գլուխը նկարուած էր։ Լատինացիք զինքը Մինէրվա կը կոչէին։

## ԱՐԷՍ, ԱՍՏՂԻԿ ԵՒ ԵՐԵՔ ՇՆՈՐՀՔՆԵՐ

Արէս զոր լատինացիք Մարս կը կոչէին, Արամազդի և Հերայի զաւակն էր։ Հերա զանի Իդա լեռին վրայ մեծցուցած էր, այս լեռին քուրմերը զինքը վարժեցուցած էին ամեն տեսակ մարմնական կրթութիւններու։ Պէլլոնա քոյրը իր կառքը կը քաշէր։ Արէս անգամ մը բարկանալով Պոսիդոնի Ալիրոտիոս տղան իր աղջիկը նախատելուն համար՝ զանի սպաննեց։ Պոսիդոն իր տղուն մահուան վրայ յուսահատած՝ զԱրէս Աստուածներուն առջև դատի կանչեց, բայց Արէս անմեղ դատուեցաւ։ Այս դատաստանը Ատիկէի մէկ լեռին վրայ կտրուեցաւ, որ այս պատճառով Արիսպագոս՝ այսինքն Արէսեան ժայռ ըսուեցաւ։

Արէս մասնաւորապէս յարգուած էր Հռոմէացւոց մէջ, որոնք զինքը անորմէ սերեալ կը համարէին։ Օգոստոս կայսրը անոր անունով հոյակապ տաճար մը շինել տուած էր, որու քուրմերը տասներկու վահան կը պահէին, որոնցմէ մէկը երկինքէն ինկած կը համարուէր։

Արէս էրիկ մարդու դէմքով կը նկարագրուի, գլուխը սաղաւարտ, ձեռքը նիզակ՝ և ասպարաբար երկու ձիերով լծուած կառքի մը մէջ նստած։

Աստղիկ կամ Աֆրոտիդ՝ Արամազդի աղջիկն էր, կամ ըստ ոմանց ծովու ալիքներէն ծնած։ Զեփիւռ զան Կիպրոս տանելով անոր կրթութիւնը ժամերուն յանձնեց։ Երբ Աստղիկ Ողիմպոսի մէջ երեւցաւ, ամենքն ալ անոր գեղեցկութենէ հրապուրուելով ամեն մէկը կ՚ուզէր զան իրեն կնութեան առնել, բայց Արամազդ զանի Հեփեստոսին տուաւ շնորհը հնարելուն իբրեւ վարձատրութիւն. անյարմար ամուսնութիւն մ՚էր այս, որովհետեւ Հեփեստոս Ողիմպոսի ամենէ տգեղ աստուածն էր։

Աստղիկ իր ամուսինէն դժգոհ՝ քանի մը մահկանացուներ իր պաշտպանութեան ներքեւ առաւ, որոնց մէջ նշանաւորն է Ատոնիս հովիւը, որ կատաղի վարազի մը զոհ եղաւ, բանաստեղծները կ՚ըսեն թէ վարդի փուշ մը օր մը Ատոնիսի մատը մտնելով վարդը անոր արիւնով ներկուեցաւ։ Ան ատեն դիցուհին հրամայեց որ այնուհետեւ վարդը կարմիր մնայ։

Աթենաս և Հերա՝ Աստղիկի հետ իրենց գեղեցկութեան համար վէճ մ՚ունեցան։ Արամազդ չու֊

զնլով վճիռը ինքը տալ՝ Պարիս հովիւին յանձնեց մրցանակը ամենէ գեղեցկին յանձնելու պաշտօնը․ Պարիս զայն Աստղիկին տուաւ ։

Կ՚ըսուէր թէ Աստղիկ հրաշալի գօտի մ՚ունէր զոր կրողը անպատճառ կը սիրուէր ։ Հերա օր մը փոխ առաւ զայն իր անհաւատարիմ ամուսնոյն սիրտը վերստին շահելու ։ Աստղիկի նշանաւոր որդիներն էին՝ Կուպիտոն կամ Սէր, Բրիաքոս, Հիմէն, Ենէաս, Երեք Շնորհքները, այսինքն՝ Ակլաէ, Թալիա և Էֆրոսինէ ։

Աստղիկ գրեթէ ամեն տեղ յարգուած էր, մասնաւորապէս Կեթերայի, Պաֆոսի և Կիպրոսի մէջ, իրեն կը նուիրէին՝ մրտենի և աղաւնի, վասն զի Երոս Աստղկան հետ մրցելու ատեն՝ Պերիստերա յաւերժահարսը դիցուհիին օգնութեան եկած՝ և Երոս զանի Աղաւնիի փոխած էր ։ Հայաստանի մէջ ալ կ՚երևի թէ Վարդավառը Աստղկան նուիրուած էր, յորում աղաւնիներ կը թռցնէին մեր նախահարք, բայց Գ․ Լուսաւորիչ զայն Քրիստոսի Այլակերպութեան տօնին փոխեց ։

Սովորապէս Աստղիկը աղաւնիներով, կարապներով կամ ճնճղուկներով լծուած կառքի մը մէջ կը նկարագրուի ։ Իր որդին Կուպիտոն՝ քովը ոտքի վրայ կեցած ։

Երեք Շնորհքները իրենց մօրմէն չէին բաժնուեր երբէք, յաւիտենական դեղեցկութիւնով օժտեալ՝ իրարու ձեռքէն բռնած թեթևապէս կը պարէին Կեփիսի անտառներու մէջ ։ Երեք Շնորհքները ոչ միայն զուարթութիւն այլև առատաձեռնութիւն, լեզուանութիւն և իմաստութիւն կը բաշխէին

մարդկանց և իրենց ամենէ գեղեցիկ պարծանքը բարեգործութիւններու և երախտագիտութեան նախադասելն էր։ Ասոր համար ամեն տեղ յարգի էին ու տաճարներ ունէին։ Սովորութիւն էր սեղանի վրայ երեք բաժակ խմել։ Հին ատենի ամենէ մեծ արհեստագէտները անոնց պատկերները նկարագրելու աշխատած են։ Իզմիրի մէջ Ապէղէս նկարագրած է զանոնք և Սոկրատ մարմարէ արձաննին քանդակած է։ Գարունը անոնց նուիրուած էր մասնաւորապէս։

## ՀԵՓԵՍՏՈՍ, ՀԵՐՄԷՍ, ԻՐԻՍ

Հեփեստոս՝ Արամազդի և Հերայի որդին էր, կը կարծեն թէ երբ Արամազդ Հերայի ոտքերէն երկու ծանր սալեր կապած երկինքէն կախեց՝ Հեփեստոս փորձ ըրաւ իր մայրը ազատելու և անոր համար Արամազդ զինքը երկինքէն վար նետեց. Հեփեստոս ինն օր վար գլորուելէն ետքը՝ Լէմնոս կղզին ինկաւ՝ և իյնելու ատեն ոտքը կոտրելով կաղ մնաց։

Հեփեստոս Լէմնոսի մէջ հաստատուեցաւ. հոն իրեն պալատ մը շինեց, դարբիններ պատրաստեց, Լէմնացւոց մետաղներ բանիլ սորվեցընելով։ Իր առաջին գործը՝ խիստ վարպետութեամբ շինուած ոսկի գահ մ'էր՝ զոր իր մօրը նուէր ղրկեց. բայց երբ մայրը զայն գործածել ուզեց՝ թագուն զսպանակներով վրան գամուած մնաց, և բոլոր աստուածներուն ծիծաղը շարժեց։ Հեփեստոս իր մօր արհամարհանքէն և զինքը չսիրելէն վիրաւորուած՝

այս միջոցով իր վրէժը լուծել ուզած էր․ վերջապէս Բագոս գնաց Հեփեստոսը գինովցուց որպէս զի գայ իր մայրը ազատէ ։

Այս աստուածը հրաբուխներու՝ մասնաւորապէս Էտնա լեռին մէջ կ՚աշխատէր, իրեն օգնական ունենալով Կիկլոպները ։ Զինքը կը ներկայացնէին քըրտինքի մէջ ողողուած, մազերը տակնուվրայ․ աջ ձեռքը մուրճ մը՝ և ձախը ունելի մը բռնած՝ ու ամենատգեղ կերպարանքով ։ Կենդանիներու մէջէ առիւծը իրեն նուիրուած էր, շուները իր տաճարները կը պահպանէին ։

Ամենէն աւելի Եգիպտացիք կը յարգէին զինքը ։ Մէմֆիսի մէջ փառաւոր տաճար մ՚ունէր ։ Հռոմայեցիներն եւս իրեն համար բազմաթիւ տաճարներ շինեցին ։ Ի պատիւ իրեն՝ հանդէսներ հաստատած էին, որոնց մէջ պէտք էր մարդ վառ ջահ մը ձեռքը բռնած՝ մինչև որոշեալ տեղ մը վազել ։ Լատինացիք Հեփեստոսի՝ Վիւլքանոս անունը կը տային ։

Հերմէս (ըստ լատինացւոց Մերգուրիոս) Արամազդի և Մէաի որդին էր․ որ իր ծննդեան երկրորդ օրը իր սքանչելի ճարպկութեան և չար հակումներու փորձը ցոյց տուաւ, Ադմէթին կովերը՝ զորս Ապողոն կը պահէր՝ գողցաւ, զանոնք ետ ետ քալեցնելով որպէս զի անոնց հետքը չգտնուի ։ Ապողոն անօգուտ տեղ աղերս ու սպառնալիք գործածեց գողին դէմ, որպէս զի անոնց ուր ըլլալը հասկընայ, տեսաւ որ իր խօսելու ատեն դեռահասակ գողը իր սլաքներն ու կապարճը գողցած էր ։

Հերմէս մեծնալով՝ իր այս տաղանդը կատարելագործեց․ օր մը յանդգնեցաւ Պոսիդոնէն՝ եռա-

ժանին, Աստղիկէն՝ գօտին, Արէսէն՝ սուրը, Արտամազդէն՝ գաւազանը, Հեփեստոսէն՝ ունելիները և մուրճը գողնալու։ Արամազդ անոր ճարպկութեան վրայ զմայլելով, զայն իր բանբերը ու միանգամայն թարգմանն ըրաւ. բայց անոր անընդհատ գողութեան վրայ գայրանալով՝ Ողիմպոսէն վռնտեց, ու Հերմէս իր տարագրութիւնը սփոփելու համար քնարը հնարեց։

Արամազդին՝ հսկաներու դէմ ունեցած պատերազմին մէջ՝ Հերմէս մեծ քաջութիւն ցուցընելուն համար աստուածներու հայրը անոր հետ հաշտուեցաւ։

Հերմէս բազմաթիւ պաշտօններ ունէր, գլխաւորն էր՝ մեռելներու հոգիները դժոխքը տանել, ասկէ զատ Ողիմպոսին միջնորդն ու միանգամայն տնտեսն էր. հանդէսներու վրայ կը նախագահէր. խաղաղութեան ու պատերազմի դաշինքներ կ՚կնքէր. դեսպանները կ՚ընդունէր անոնց կ՚պատասխանէր և այսչափ շատ գործ ունենալուն համար, Արամազդ ասոր գլխին, ուսերուն և գարշապարներուն վրայ թևեր դրած էր։

Բարձրահասակ, նորատի երիտասարդի մը դէմքով կը ներկայացընեն զՀերմէս, մէկ ձեռքը քարոզակ մը բռնած՝ և միւսը ձիթենիի ճիւղ մը, երբեմն ալ քսակ մը. քարոզակը երկու օձերով պատած է, վասն զի անգամ մը երկու օձ կռիւ ընելու ատեն Հերմէս՝ զանոնք բաժներ և իրարու հետ հաշտեցուցեր էր։ Բերնէն ոսկիէ շղթայ մը կ՚ելլէ և զինքը մտիկ ընողին ականջը կ՚երթայ կը փաթթուի. մասնաւորապէս ագահը իրեն նուիրուած էր։

Հերմէս՝ արուեստից, ճարտարախօսութեան, վաճառականութեան, ճամբորդներու և գողերու աստուածն ըլլալուն՝ իր պաշտօնը խիստ տարածուած էր · ողջագործութեանց մէջ իրեն կը նուիրէին զոհերուն լեզուն, կաթ ու մեղր։

Գ. Մ. Էմինի նայելով Հայաստանի մէջ մեր նախնիք Տէր անունը կու տային Հերմէսի։ Տէր քուրմերու խորհրդական հոգիները դժոխքի առաջնորդողն էր։ Այս գիտունը կը կարծէ որ Տէրը տանի ռամկական խօսքը՝ Տիրը տանի ըսելու տեղ կը գործածուի, զի Տիր Արամազդայ գրագիրն էր։

Ուրիշ Հերմէսներ ալ կան, որոնց մէջ ամենէ նշանաւորն է Հերմէս եռամեծն՝ Եգիպտացւոց թագաւորը՝ որ քաջ երկրաչափ ըլլալով դաշտերը չուանով չափելու և դպրութեան արհեստը գտաւ։

Հերմէս Արամազդին քով ինչ պաշտօն որ կը կատարէր նոյնը կը կատարէր Իրիս Հերային քով։ Իրիս Թաւմասի և Էլէգտրայի աղջիկն էր։ Միշտ Հերային քով կայնած կ'երևի։ Երբ հանգստի պէտք ունենայ իր երկնային տիրուհւոյն գահին կը մօտենայ որպէս վայրկեան մը քնանայ։ Հերա ամենափափուկ պարագաներու մէջ կը գործածէր Իրիսը, որ Հերմէսէն աւելի արագաշարժ էր և թագուհւոյն հրամանները մինչև աշխարհիս միւս ծայրը կը տանէր· ասի պաշտօն ունէր նաև կիներու կենացթելը կտրել, ու անոնց հոգիները դժոխք տանիլ։ Ըստ բանաստեղծից, իր տիրուհւոյն սենեկին հոգ կը տանէր, ու անոր անկողինը կը շինէր։ Հերա անոր ծառայութիւններէն գոհ ըլլալով կ'ըսեն թէ զան ծիածանի փոխեց· ուստի փոթորիկէ ետքը՝ Իրիս ամպերու ետևէն իր փայլուն թևերը կը ցուցնէ մեզի։

## ԱՊՈՂՈՆ, ՄՈՒՍԱՑՔ ԵՒ ՏԻԱՆԱ

Ապողոն (1) Արամազդի ու Լաթոնի որդին էր։ Հերա նախանձելով Լաթոնէն՝ որ Արամազդայ սիրոյն արժանացեր էր, ան աստիճանի կը հալածէր զան, որ այս խեղճը ո՛ւր ապաւինիլը չէր գիտեր։ Պոսիդոն անոր վրայ գթալով՝ երաժանիին մէկ հարուածով ծովի խորէն Տէլոս կղզին հանեց՝ ուր Լաթոն Անահիտն ու Ապողոնը ծնաւ։

Ապողոն Արամազդի սիրելի որդին՝ ծնելուն պէս ամենէ ընտիր հանգամանքները ստացաւ, ինչպէս գեղեցկութիւն, իմաստութիւն, արիութիւն և յաւերժական երիտասարդութիւն։ Արամազդ ուզեց որ նա օրուան աստուածն ըլլայ և Ապողոն լուսաւոր ճակատով, և չորս նժոյգներէ լծուած կառքի մը վրայ նստած՝ ամեն օր հորիզոնին վրայ կ'ելլէ ու բովանդակ աշխարհը կը լուսաւորէ։ Ինք հնարեց բանաստեղծութիւնը, երաժշտութիւնը և ճարտարախօսութիւնը։

Սոսկալի էր Ապողոնի բարկութիւնը։ Դեռ տղայ էր, երբ Հերայի իրեն դէմ ղրկած վիշապը սլաքի հարուածներով սպաննեց. չվախցաւ նաև Արամազդի հետ չափուելու՝ իր Ասկղէպիոս որդին չանթահարելուն համար. Կիկլոպները ջարդեց, որ Արամազդի չանթերը շինած էին։ Արամազդ

(1) Լատինացւոց՝ Ֆէպիւս, Եգիպտացւոց՝ Օզիրիս, Մովաբացւոց՝ Բէլֆեգոր, Պարսից՝ Միհրն է։

պատժեց զան Ողիմպոսէն տարագրելով։ Ապողոն. իր փառքէն զրկուելով՝ հարկադրուեցաւ Թեսալիոյ Ադմէթ թագաւորին հօտը պահելու, և ետքը՝ Լաօմէտոնի քով ծառայութեան մտնելով՝ անոր օգնեց Տրոյիոյ պատերը կանգնելու. բայց Լաօմէտոն անոր խոստացած օրողջէքը մերժեց տալ՝ և Ապողոն ալ անոր անձին և ժողովուրդին դէմ մշտատև ատելութիւն մ'ուխտեց։ Քիչ ատենէն Արամազդ՝ որ իր որդին միշտ կը սիրէր, զան նորէն Ողիմպոս կանչեց և իր առջի շքեղութիւնները անոր տուաւ։

Ուրիշ անգամ մը՝ Պան աստուածը ուզեց իր սրինգով Ապողոնի քնարին հետ մրցիլ։ Երկու ոսոխներ իբրև դատաւոր՝ Լիտիայի Թմօլիւս թագաւորը ընտրեցին, որ զանոնք մտիկ ընելէն ետքը յաղթանակը Ապողոնին տուաւ։ Փռիւգիոյ Միտաս թագաւորը որ այս պայքարին հանդիսատես եղած էր, կարծիք յայտնեց թէ՝ Թմօլիւս կը սխալէր։ Ապողոն զան պատժելու համար իշու ականջներ տուաւ անոր։ Խեղճ թագաւորը այս տձևութիւնը իր խոյրին մէջ պահեց. բայց իր սափրիչը այս այլանդակ գաղտնիքը հասկցաւ, և իր տիրոջ բարկութենէն վախնալուն՝ չհամարձակելով մէկու մը հաղորդել զայն, գնաց հողը բաւական խորութեամբ փորեց, ու գաղտնիքը անոր հաղորդեց, «Միտաս, ըսաւ խիստ ցած ձայնով մը, Միտաս թագաւորը իշու ականջներ ունի»։ սափրիչը կը կարծէր որ գաղտնիքը հողին տակ թաղեր էր, սակայն նոյն տեղ եղեգներ աճեցան որ շարունակ կը կրկնէին. «Միտաս, Միտաս թագաւորը իշու ականջներ ունի»։

Անգամ մ'ալ Տանտալի աղջիկը Նիոպէ՝ եօթը աղջիկ ու եօթը տղայ զաւակ ունենալով, Ապողոնի մայր՝ Լաթոնը արհամարհած էր միայն երկու զաւակ ունենալուն համար։ Լաթոն Ապողոնէն խնդրեց որ իրեն եղած նախատինքին վրէժը լուծէ։ Ապողոն Նիօպէի տասնըչորս զաւակներն ալ սպաննեց իր անտեսանելի սլաքներով, և այն ատենէ 'ի վեր Նիոպէ սկսաւ արցունքի հեղեղներ թափել։ Վերջապէս աստուածներու սիրտը ցաւելով անոր վրայ՝ զինքը ժայռի փոխեցին. այն է հիմակուան Լիւդիոյ Սիբիլ լեռը՝ որ հեռուէն կրօք կնիկի կը նմանի։

Ապողոն՝ որ Նիոպէի մայրական սիրտը այնքան ցաւցուցած էր, ինքն ալ նոյնօրինակ ցաւով մը համակուեցաւ։ Ասկղէպիոսի Արամազդէն չանթահարուելէն ետքը, իր Ֆայէթոն որդին ալ նոյն բաղդին ենթարկուեցաւ։ Արամազդի Էփաֆոս որդին, օր մը Ֆայէթոնին ըսաւ թէ՝ Ապողոն իր հայրը չէր ինչպէս որ կը պարծէր, Ֆայէթոն այս բանին վրայ գնաց իր մօր Կլիմէնէին գանգատելու։ Կլիմէնէ իրեն հրամայեց հօրը երթալ և իր բարձր ծննդեան իբրև փորձ անորմէ խնդրել որ՝ արեւու կառքը օր մը ինքը վարէ։ Ֆայէթօն մօրը խրատներու անսաց և Ապողոնէն շնորհք մը խնդրեց առանց ինչ ըլլալն անոր ըսելու։ Ապողոն՝ իր որդւոյն խնդրին ինչ ըլլալը չգիտնալով՝ Ստիքսին վրայ ուխտեց որ զայն պիտի չմերժէ. այն ատեն Ֆայէթօն արևը վարելու պաշտօնը խնդրեց։ Ապողոն Ստիքսի վրայ երդում ըրած ըլլալուն՝ ստիպուեցաւ խնդիրքը կատարել, և Ֆայէթոն արևի սանձը

ձեռք տուաւ, բայց զայն քաշող կառապի ձիերը
զիրենք կառավարողին անվարժութիւնը տեսնելով
իրենց սովորական ճամբայէն կը շեղէին, մերթ եր֊
կինքին կը մօտենային և ամեն ինչ այրելու կ'սպառ֊
նային, և մերթ երկրի կը քսուէին ու իրենց ճամ֊
բուն վրայ գտնուած աղբիւրներն ու գետերը կը
չորցընէին։ Ասոր վրայ Արամազդ զայրանալով՝
յանդուգն Ֆայէթոնը շանթահարեց որ Էրիտանի
մէջ ըյնելով խղդուեցաւ։
Ապողոն՝ բարերար ու արուեստներու և պեր֊
ճախօսութեան աստուածը՝ ամեն տեղ տաճարներ
ունեցաւ։ Ամենէ նշանաւորն էր Տէլփինը՝ ուր քըր֊
մուհի մը անոր անունով պատգամներ կ'արձակէր։
Ապողոն գեղեցիկ երիտասարդի մը դէմքով կը
նկարագրուի, գլուխը ճառագայթներով պսակուած․
ձեռքը քնար մը, երբեմն աղեղով մը զինուած է՝ և
քիչ մը բարկալիր դէմքով։
Մուսայք՝ Արամազդի և Մնէմոզինի աղջիկները,
ինն քոյր էին՝ որ Ապողոնի հետ Պառնասի և Եղի֊
կոնի գագաթները կը բնակէին։ Ասոնք Պիերեանք
ալ կը կոչուէին Մակեդոնիայի Պիերոս թագաւորին
ինն աղջիկներուն հետ երգի վրայ մրցելնուն հա֊
մար որոնց յաղթելով զանոնք կաչաղակի փոխեցին։
Մուսայք՝ գեղեցիկ և համեստ կոյսերու դէմքով
նկարագրուած են։ Ամեն մէկը զատ պաշտօն
ունէր․ այսինքն, Գլիօ՝ պատմութեան աստուա֊
ծուհին էր․ աջ ձեռքը շեփոր մը, ձախը՝ բաց գիրք
մը և գլուխը դափնի պսակ,
Կալլիոպէ՝ պերճախօսութեան և դիւցազներ֊
գութեան դիցուհին էր,

Մելպոմէն՝ ողբերգութեան, մէկ ձեռքը պսակներ, միւսը՝ դաշոյն մը,

Թալի՝ կատակերգութեան,

Բոլիմնիա՝ տաղերգութեան։

Էրատօ՝ սիրային նուագի, զուարթ դէմքով, և գլուխը մրտենիով ու վարդերով զարդարուած,

Եւտերպէ՝ երաժշտութեան և հովուական բանաստեղծութեան՝ ոտքերուն ներքև երաժշտական գործիներով կը նկարագրուի,

Ուրանիա՝ աստղաբաշխութեան՝ գլուխը աստղերով զարդարուած՝ ձեռքը երկնագունտ մը,

Թէրփսիքոր՝ պարի դիցուհի,

Մուսայք Շնորհներու հետ միևնոյն տաճարի մէջ կը պաշտուէին։ Բանաստեղծները շատ հեղ իրենց քերթուածներու սկիզբը զՄուսայք իրենց օգնութեան կը կանչեն։

Տիանա՝ յունաց Արտեմիսը՝ զոր մեր նախնիքները ոմանք Անահիտը համարած են սխալմամբ՝ (1) Ապողոնի հետ ծնաւ և իր մօրը Լաթօնի՝ Ապողոնի ծննդեան պատճառաւ քաշած տառապանքը յիշելով միտքը դրաւ չամուսնանալ։ Արամազդ իրեն իբրև ընկեր՝ վաթսուն Ովկիանուհի և քսան յաւերժահարս տուած էր որ իրեն պէս կուսութիւն ուխտած էին, ուստի Տիանա անտառներու մէջ վայրի կենդանիներ որսալով կ'զբօսնուր, բայց և այնպէս՝ կ'ըսուի որ Անտեմիոնը սիրելով անոր հետ ամուսնացաւ և իր ամուսնութիւնը զգուշութեամբ գաղտնի պահեց։

(1) Տես Մ. Էմինի «Հետազօտութեան հայ հեթանոսութեան վրայ։

Այս աստուածուհին երեք տարբեր անուններով կը պաշտուէր, մերթ Տիանա, մերթ Փեւփէ, այսինքն՝ լուսին (իբրև Ապողոնի քոյրը) և երբեմն Հեգաթ կը կոչուէր։ Իր ամենէ հոյակապ տաճարը Իզմիրի մօտ Եփեսոսինն էր որ աշխարհիս եօթը հրաշալիքներէ մէկը կը համարուէր. երկու հարիւր տարուան մէջ շինուած էր Քտէսիֆոնի ճարտարապետութեամբ. տաճարին մէջ երկու հարիւր քսան հատ սիւն կար՝ հարիւր քսան եօթը ոտք բարձրութեամբ։ Էրոստրատ Եփեսացին այրեց զայն իր յիշատակը անմահ ձգելու համար Աղեքսանդր Մեծին ծնած օրը։

Իզմիրի մօտերն էին նաև իւր բաղանիքները, ուր տեղ իր մէկ հրաշալի արձանը գտնուած է։

Տիանա՝ կապարճով մը զինուած և որսի շուներէ շրջապատուած բարձրահասակ ու առնական կնիկի մը պատկերով կը նկարագրուի, երբեմն գլխուն վրայ մահիկ մը կայ։

## ԲԱԳՈՍ

Արամազդ՝ Թէփէի Կադմոս թագաւորին աղջիկը սիրած էր։ Հերա նախանձելով Սեմէլէի դայեկին կերպարանքը կը մտնէ ու զանի կը յորդորէ Արամազդէն խնդրել որ անգամ մը իր ամեն փառքով գայ իրեն երևայ։ Սեմէլէ զՀերա իր դայեկը կարծելով՝ կ՚անսայ անոր և Արամազդ ակամայ՝ իր շանթով Կատմոսի պալատին մէջ կրակ կը ձգէ ուր Սեմէլէ կ՚այրի։

Այս միջոցին Բագոս իր մօր արգանդին մէջ էր

ուրկէ Արամազդ զինքն հանելով իր ազդրին մէջ պահեց մինչև ծնելու օրը ։

Երբ Բագոս ծնաւ՝ Հերմէս զան Նիսա բերելով նախ յաւերժահարսերուն և ապա Մուսայից ու Սելէնէսի յանձնեց, որ անոր հաւատարիմ ընկեր մնաց ։ Բագոս մեծցած ատեն յաւերժահարսերը չմոռցաւ և զանոնք աստղերու փոխեց որոնք Բոյլք ըսուեցան ։ Հերա Բագոսի մօրը մահուամբ գոհ չըլլալով ուզեց նաև անոր որդին մեռցընել, ու Բագոսի դէմ երկգլխի օձ մը ղրկեց զոր Բագոս թևերուն մէջ առնելով խղդեց․ ուստի Հերա խենթեցուց զանի, և Բագոս սխսաւ բոլոր երկրի վրայ թափառիլ, բայց Փռիւգիոյ մէջ բժշկուեցաւ ։ Իր ուղևորութեան միջոցին՝ Նագսոս կղզին մէջ անգամ մը քունը տարաւ, ու ծովահէնները զինքը առևանգեցին, Բագոս արթնցածին պէս՝ զանոնք տելֆինի փոխեց ։

Յետոյ Սելէնէ ու շատ մը կիներու և մարդերու հետ գնաց Հնդկաստանի տիրեց նուագարաններով, առանց կաթիլ մ՚արիւն թափելու ։

Հսկաներուն՝ Արամազդին դէմ մղած պատերազմին մէջ՝ ոչ նուազ փառաւորուեցաւ նա, վասն զի առիւծի փոխուելով՝ ամենէ ահարկու Տիտանը սպաննեց ։

Բագոս գինիի աստուածն է ։ Սովորաբար նորատի ու խնդումերես երիտասարդի մը դէմքով և դեղձին մազերով կը ներկայացընէին, տակառի մը կամ յովազներով ու վագրերով լծուած կառքի մը վրայ նստած․ եղջերաւոր գլուխը պսակուած է որթատունկէ կամ բաղեղէ պսակով մը, ձեռքը

դաւազան։ Թռչուններու մէջ անծեղը իրեն նուիրուած էր։

Բաքոսի պաշտօնը խիստ տարածուած էր Յունաստանի մէջ, ուր Դիոնիս անունը կը տային իրեն և Հայք՝ Սպանդարամետ։ Յոյները փառաւոր հանդէսներ կը կատարէին սպանդարամետական կամ Բաքոսեան անունով՝ և Բաքոսի քրմուհիները խայտառակ արարողութիւններ կ'ընէին։

## ՊՐՕՄԷԹԷ, ԱԹԼԱՍ, ԱՍՏԵՂԱՏՈՒՆՆԵՐ

Պրոմէթէ՝ Քլիմէնէի և Յաբէթի իմաստուն որդին էր, որ Արամազդի հետևելով՝ ուզեց մարդեր ստեղծել. ուստի արձաններ շինեց՝ և երկինքէն բնութիւնը կենդանացընող կրակին մէկ կայծը գողնալով՝ զանոնք կենդանացուց։ Արամազդ ասոր վրայ բարկացաւ և Հեփեստոսին հրաման տուաւ որ Պրոմէթէն Կովկաս լեռին վրայ ժայռի մը կապէ, ուր անգղ մը անոր լեարդը կը կրծէր և լեարդը միշտ աճելով՝ Պրոմէթէ յաւիտենական տանջանք մը կը կրէր։ Բայց յետոյ Հերքիւլէս անգղը մեռցընելով Պրոմէթէն ազատեց։

Միւս աստուածները նեղացան Արամազդի խըստութեան վրայ՝ և տեսնելով որ մարդ ստեղծելու իրաւունքը իրեն վերապահել կ'ուզէր՝ կին մը շինեցին որու ամեն մէկը մասնաւոր ձիրք մը շնորհեց, Աթենաս՝ իմաստութիւն տուաւ անոր, Աստղիկ՝ գեղեցկութիւն, Հերմէս՝ լեզուանութիւն եւն, այս կինը Բանտօր ըսուեցաւ. Արամազդ ալ՝ իբրև թէ անոր ընծայ մ'ընելու համար ձեռքը դոց տուփ

մը տուաւ՝ և ապսպրեց որ Պրոմէթէի տանի։ Պրոմէթէ իր փորձ խոհեմութեամբը գուշակելով որ անոր տակ խաղ մը կայ՝ ոչ Բանտորը ընդունեցաւ և ոչ տուփը, այլ իր եղբայրը Էփիմէթէ՝ որ անմիտ մէկն էր, Բանտորի հետ կարգուեցաւ։ Տուփը բացուեցաւ, ուրկէ ամէն տեսակ չարիք ու ոճիրներ դուրս ելնելով աշխարհ լեցուցին. միայն Յոյսը մնաց անոր մէջ։

Աթլաս՝ ըստ ոմանց Պրոմէթէի եղբայրն էր, և ըստ ոմանց Կրոնոսի. ասի Էսպէրոսի աղջկան հետ կարգուելով՝ եօթ աղջիկ ունեցաւ որ Էսպէրուհիք ըսուեցան, Մայա, Էլէքթրա, Դայկէթ, Աստէրոպէ, Մերոբէ, Ալկիոնէ և Կեղենէ։ Սպանիայի Գոզերիս թագաւորը ասոնց գեղեցկութեան զարնուելով հէներու ձեռքով դողցընել տալ ուզեց զանոնք, բայց Հերքիւլէս վրայ հասաւ և Էսպերուհիքը ազատելով զանոնք իրենց հօրը վերադարձուց։ Աթլաս երախտագիտութեամբ լցուած՝ իր պարտէզին ոսկիէ խնձորներէն սպարգև տուաւ անոր։ Այս պարտէզը Էսպերեան կը կոչուէր ու հարիւրգլխեան վիշապի մը պահպանութեան տակ էր։

Աթլաս աստղագէտ ըլլալով միշտ բարձր ժայռերու վրայէ աստղերը զննելուն՝ իր աղջիկները վեց աստղերէ բաղկացած համաստեղութեան մը փոխուած են. եօթերորդը աներևոյթ եղած է, այն է Էլեքթրա՝ Տարտանոսի կինը, որ Տրովայի կռիւին ատեն պահուեցաւ իր ընտանեաց աղէտքը չտեսնելու համար. բայց և այնպէս երբեմն մահկանացուներու աչքին կ'երևայ՝ հերարձակ գիսաւորի մը կերպարանքով։

Աթլաս Տիտաններուն հետ Արամազդի դէմ կռուելուն համար զաշխարհ ուսերուն վրայ կրելու դատապարտուեցաւ Արամազդէն. ոմանք ալ կ'ըսեն թէ Արամազդի Պէրսէոս տղան հիւրընկալած չըլլալուն համար՝ Աթլաս ահագին լեռի մը փոխուած է, որ Ափրիկէի հիւսիսային կողմը կ'ըյնի։

## ԾՈՎԻ ԱՍՏՈՒԱԾՆԵՐ

—

### ՈՎԿԻԱՆՈՍ ԵՒ ԹԷՏԻՍ, ՊՈՍԻԴՈՆ ԵՒ ԱՄՖԻԹՐԻՏ ՆԵՐԷՈՍ, ՆԵՐԷԻՏՆԵՐ, ՏՐԻՏՈՆՆԵՐ, ՊՐՈԹԷՈՍ

Ովկիանոս երկնի՝ այսինքն Ուրանոսի և երկրի որդին էր, իր Թէտիս քրոջը հետ ամուսնանալով՝ շատ զաւակներ ունեցաւ, 'ի մէջ այլոց երեք հազար յաւերժահարսեր ու տրիտոններ կամ ովկիանուհիներ; ասոնցմէ զատ գետերը, աղբիւրները, Բրոթէոս և Ներէոս՝ իր որդիները կը համարուէին։

Ովկիանոսը ծովի ալիքներու վրայ նստած ծերունիի մը դէմքով կը ներկայացնեն, ճակատը՝ երկու խեցիներով գինուած, ձեռքը տէգ մը, և քովը ծովային հրէշ մը։ Ի պատիւ իրեն գինի կը խմէին, խնդրելով իրմէ՝ որ ծովու ճամբորդները ողջ առողջ վերադարձընէ։ Փոթորկի ատեն ծովապետները իրեն սև ցուլ մը կը զոհէին, իսկ ծովու հանդարտութեան ատենը՝ ոչխարներ ու խոզեր։

Պոսիդոն՝ Լատինացւոց Նէպթիւնը, Արամազդի եղբայրն էր՝ զոր իր հայրը կուլ տալէն ետքը փրսխած էր։ Աշխարհիս բաժանման ատեն՝ Պոսիդոն ծովերու վրայ տիրելու իրաւունք ստացաւ. բայց կ'երևի թէ իր ժառանգութենէն դժգոհ՝ միւս աստուածներու հետ միացաւ Արամազդը գահընկեց ընելու համար։ Սակայն դաւը երևան ելաւ և Պոսիդոն երկինքէն վռնտուեցաւ, միանգամայն իր պաշտօնէն զրկուելով։ Ապողոնին պէս՝ Տրոյիոյ Լաոմէտոն թագաւորին քով ծառայութեան մտաւ նա՝ այն քաղաքին պատերը շինելու համար։ Բայց Լաոմէտոն անոր խոստացած օրականը վճարել չուզեց. ուստի երբ ատենէ մը ետքը Պոսիդոն Արամազդին հետ հաշտուեցաւ, ծովին ջուրերը բարձրացընելով Տրովան ողողեց, անկէ զատ ծովային հրէշ մը ղրկեց որ զայն աւերեց, մինչև որ Հերքիւլէս եկաւ գազանը սպաննեց։

Պոսիդոն՝ Ներէոսի ու Տորիսի Ամֆիթրիտէ աղջկանը հետ ամուսնացաւ դլփինի մը բարեխօսութեամբ, անոր համար Պոսիդոն այն դլփինը համաստեղութեան փոխեց։

Ծովերու աստուած ըլլալով՝ Արամազդէն ետքը զօրաւորագոյն աստուածը կը համարուէր Պոսիդոն և ամեն տեղ յարգի էր։ Յոյներն ու Հռոմայեցիք 'ի պատիւ իրեն տօներ կըկատարէին։ Թևաւոր ձիերով լծուած խեցիէ կառքի մը մէջ կը նկարագրեն զանի ձեռքը եռաժանի մը. կառքի ետևէն տրիտոններ և մարդաձուկեր կ'երթան։

Ներէոս՝ երկրորդ կարգի աստուած մ'էր, Ովկիանու և Թէտիսի որդին, որ իր քրոջը Տօրիսին

հետ ամուսնանալով յիսուն աղջիկ ունեցաւ որոնք Ներէիտք ըսուեցան։

Ներէոս իր կեանքը Արշիպեղագոսին մէջ կ'անցընէր, ուր Ներէիտները զանի իրենց երգերով ու պարով կ'զբօսցընէին. ասի ապագան կը գուշակէր, կ'ըսուի թէ ատոր խորհրդով Հերքիւլէս կրցաւ Հեսպերեան պարտէզին ոսկի խնձորները ընծայ առնել Ատլասէն։

Ներէիտները կը պաշտուէին ծովին եզերքը՝ ուր հինները 'ի պատիւ իրենց սեղաններ կը կանգնէին. ասոնք աղջիկներու կերպարանքով կը նկարագրուէին դելփիններու վրայ նստած՝ ձեռքերնին ծաղկեայ պսակներ։

Տրիտոնները՝ Պոսիդոնին և Ամփիթրիտին որդիներն էին, և Պոսիդոնին առջևէն կ'երթային։ Երբեմն այս անունը կը տացուի բոլոր ծովային աստուածներու՝ որոնք Պոսիդոնի կառքը կը շրջապատեն։ Ասոնք մարդու գլխով, ձուկի պոչով, կապոյտ աչքերով և թեփոտ ձեռքերով կը նկարագրուին։

Պրօթէոս՝ Ներէոսին եղբայրն էր որ Պոսիդոնին հօտը՝ այսինքն փոկերը կը պահէր։ Պոսիդոն զանի վարձատրելու համար՝ ապագան գուշակելու կարողութիւն շնորհեց անոր. սակայն բերնէն պատգամ մ'առնելու համար հարկ էր զանի կապել, և աս ալ խիստ դժուար էր՝ վասն զի միշտ փախուստ կը տար նա, և ամեն տեսակ ձև ու գոյն կ'առնէր չբռնուելու համար։

Արիսթէոս՝ Արքատիայի թագաւորը անգամ մ'իր մեղուները կորսնցընելով մօրը դիմեց. մայրն ալ

զինքը յորդորեց որ երթայ Պրոթէոսէն պատգամ հարցնէ իր մեղուները գտնելու համար, և միանգամայն խրատեց որ անոր քուն եղած ատենը վրայ հասնելով կապէ զանի, որպէս զի չփախի կամ կերպարանափոխ չըլլայ: Արիսթէոս մօրը ըսածը գործադրեց՝ և Պրոթէոսը գետափը պառկած ատեն՝ բռնեց թևերուն մէջն առնելով յաջողեցաւ բռնութեամբ իր մեղուներուն ո՛ւր գտնուիլն իմանալ: Մենելաւոս այն իշխանը և Հերքիւլէս՝ նոյն միջոցներով կըցան Պրոթէոսը պատգամ արձակելու ստիպել:

Պրոթէոս ծեր մարդու մը կերպարանքով կը նկարագրուի:

## ՓՈՐԿՈՍ, ՍԱՐՈՆ, ԲԱԼԷՄՈՆ, ԼԷՒԿՕԴՕԷ, ԳԼՕԳՈՍ, ՍԿԻԼԼԱ, ՔԱՐԻԲՏԻՍ, ՅԱՒԵՐԺԱՀԱՐՍԵՐ, և

Փորկոս՝ Պոնտոսի և Երկրի որդին էր. կ՚ըսուի թէ իր Աէլօ կնիկէն ունեցած զաւակներուն մազերը ծնելնուն պէս կը ճերմկէին և թէ Էսպերեան պարտէզը պահող վիշապին հայրն էր:

Թրէզէնի Սարոն թագաւորը՝ որսորդութիւնը չափազանց կը սիրէր. օր մը եղջերու մը որսալու ատեն՝ եղջերուն ծովը նետուեցաւ, Սարոն ալ անոր հետևեցաւ և շատ յառաջանալով՝ ինքզինքը ծովին բացերը գտաւ, ու յոգնելով խեղդուեցաւ: Իր մարմինը Տիանայի նուիրական անտառը բերուելով՝ տաճարին գաւիթին մէջ թաղուեցաւ: Սարոնի հպատակները զինքը ծովի աստուածներուն կարգը՝ և իր անունը դրին այն պարանոցին՝ որ Բելոպոնէսը հիւսիսային Յունաստանէն կըզատէ:

Բալէմոն՝ Թէբէի Ատամաս թագաւորին և Ինոյի որդին էր որ նախ Մելիկերթ կոչուեցաւ։ Ատամաս սաստիկ բարկութեան մը միջոցին՝ իր որդիներէն մին Լէարկոսը սպաննեց. անատեն իր կինը Ինօ՝ Մելիկերթին հետ խոյս տալով՝ ծովը նետուեցաւ ու երկուքն՝ ալ ծովու աստուածի փոխուեցան. Մելիկերթ՝ Բալէմոն ըսուեցաւ և Ինօ՝ Լեւկոդոէ։

Մելիկերթը՝ Թենէտոս կղզին մէջ չափազանց յարգուած էր, ուրտեղ մինչև անգամ մանուկներ կը զոհէին իրեն։ Հռոմայեցիք որ իրենց աստուածները Յոներէն առած են Մելիկերտի Պրօտումնոս՝ և Լեւկոդոէի ալ Մաթուտա անունը կը տային։

Կլօգոս՝ Պոսիդոնի որդին՝ Բէօվտիայի Անթէդոն քաղաքէն հռչակաւոր ձկնորս մ'էր։ Ասի անգամ մը բռնած ձուկերը խոտին վրայ դնելով՝ տեսաւ որ շարժումներ կ'ընէին՝ ծովը նետուելու համար և հասկըցաւ որ այն խոտերը հրաշալի զօրութիւն մը ունին, ուստի անոնցմէ կերաւ և ծովու աստուածի փոխուեցաւ։ Ասիկա ճերմակ ու թրջուած մօրուքով կը նկարագրուէր. մազերը ուսերուն վրայ կը ծածանէին. կուրծքը ծովու խոտերով ծածկուած։

Սկիլլա գեղանի յաւերժահարս մ'էր՝ զոր Կլօգոս սիրեց, բայց ինքը անորմէ չսիրուելով Կիրկէ վհուկին դիմեց. Կիրկէ թունաւորեց այն աւազակը որուն մէջ Սկիլլա կը լուացուէր, որով Սկիլլա հրէշի մը փոխուեցաւ եօթը գլխով, որոց ամէն մէկը երեք ակռայի շարք ունէր. մարմնէն խել մը շուներ կ'ելնէին ու իրենց հաչիւններով անցորդները կը սարսափեցընէին. Սկիլլա ինքզինքէն սոսկալով՝

ծովը նետուեցաւ և յորձանուտ ժայռի փոխուեցաւ։

Քարիբտիս՝ Հերքիւլէսի կովերը գողնալուն համար Արամազդ-Զանի չանթահարելով ժայռի մը փոխեց որ Սիկիլիոյ նեղուցին մէջ կը գտնուի Սկիլլայի դիմացը՝ և այսօր Գալիփոր կը կոչուի։

Սիրէնայք՝ Աքելոուս գետին՝ և Կալլիոպէ մուսային աղջիկներն էին որ Սիկիլիոյ մօտի ժայռերը բնակելով՝ իրենց անոյշ երգերով ու գեղեցկութիւնով ճամբորդները իրենց կը ձգէին։ Գլխաւորներն էին՝ Լէոկոսիա, Լիւսիա և Պարթենոպէ։

Պատգամը գուշակած էր՝ որ Սիրէնաները պիտի կորսուէին մահկանացու մը իրենց ձայնին ու խօսքերուն դիմանալուն պէս․ անոր համար Սիրէնաներու բնակած տեղերու բոլորտիքը այս տարօրինակ ներդաշնակութեան զոհերուն ոսկորներով լի էր։ Սակայն Ոդիսեւս կրցաւ անոնց ձեռքէն պըրծիլ, այն կողմերէ անցնելու ատենը ինքզինքը նաւուն կայմին կապել տալով՝ մինչդեռ նաւազներն ալ ականջնին մոմով խցեր էին։ Սիրէնաները տեսնելով որ Ոդիսեւս ձեռքերնէն կը խուսափէր՝ յուսահատութենէ ծովը նետուեցան։

Նայատները՝ գետերուն, աղբիւրներուն և ճահիճներուն մօտ կը բնակէին և զանոնք կը պահպանէին։ Ասոնք նորատի՝ և գեղեցիկ կոյսերու դէմքով կը նկարագրուէին, կուժի մը վրայ ծռած, գլուխնին շամբերով պսակուած կամ ձեռքերնին խեցի մը։ Նայատներուն այծ և գառնուկ կը զոհէին, և 'ի պատիւ անոնց՝ գինի, մեղր և եղ կը խմէին։

## ԵՒՈՂ, ՀՈՎԵՐ ԵՒ ՀԱՐԲԻՔ

Եւող՝ Արամազդի տղան էր, ու կը թագաւորէր Եւողեան եօթը կղզիներու վրայ, որոնք Սիկիլիայի ու Իտալիայի մէջտեղ կ'ըլլային։ Եւող՝ հովերու վրայ բացարձակ իշխանութիւն ունէր, զանոնք քարայրի մը խորը կը պահէր՝ և ուզած ատենը կ'արձակէր։ Եւող հեղ մը աս քարայրին դուռը բաց մոռնալով՝ Հովերը անանկ սաստիկ դուրս յարձակեցան՝ որ տարափելի փոթորիկ մը հանելով Սիկիլիան Իտալիայէն բաժնեցին։ Կ'ըսուի թէ Տրովայի պատերազմէն ետքը՝ Ոդիսեւս Եւողին քով գնաց։ Եւող զան սիրով ընդունելէ ետքը՝ անոր քանի մը տիկ ընծայ տուաւ, ապսպրելով որ զգուշութեամբ գոց պահէ զանոնք, վասն զի թէ որ անոնց մէջ պահուած հովերը դուրս ելնէին՝ փոթորկի պիտի հանդպէր անվրէպ։ Ոդիսեւսի ընկերները տիկերուն պարունակութիւնը չգիտնալով՝ իրենց գլխաւորին քնացած ատենը բացին զանոնք՝ և իրօք սոսկալի փոթորկի մը հանդիպեցան։

Հովերը՝ երկնի և երկրի զաւակներն էին․ գլխաւորներն են Բորէաս՝ հիւսիսային հովը, կարկուտի, ձիւնի ու փոթորկի հայր․ Եւրոս՝ արևելեան հովը, Նոտոս՝ հարաւային հովը՝ որ տխուր ծերունիի մը դէմքով՝ ու ամպոտ գլխով կը նկարագրուէր, և Զեփիւռ՝ արևմտեան հովը՝ որ գլուխը ծաղիկներով զարդարուած կը նկարագրուէր։

Հարբիք՝ Պոսիդոնի և Ամֆիթրիտի աղջիկներն էին, օրիորդի դէմքով, անգղի մարմնով, մագլոտ ձեռքերով ու հոլամուկի թևերով. ասոնք ամեն դպածնին կ'ապականէին։

---

# ԴԺՈԽՔԻ ԱՍՏՈՒԱԾՆԵՐԸ

—

## ԴԺՈԽՔ, ՔԱՐՈՆ, ԿԵՐԲԵՐՈՍ, ՊՂՈՒՏՈՆ, ՊԵՐՍԵՓՈՆԷ, ԵՐԵՔ ԴԱՏԱՒՈՐՆԵՐԸ ևն

Հին ատեն ալ մարդիկ կը հաւատային որ հանդերձեալ կեանք մը կար, ուր բարին կը վարձատրուէր ու չարը կը պատժուէր։ Բնապէս-դժոխքը չարերու պահուած ստորերկրեայ տեղ մ'էր և կը գտնուէր Արքատիաի Ստիքս գետին մօտ՝ ու չորս մասի կը բաժնուէր։

Առաջինն էր՝ Երէբոսը՝ որ Արամազդի դէմ ապստամբող հսկաներուն օգնելուն համար գետի փոխուեր էր, և ուր Կերբերոս, Եւմենայք կամ Կատաղիք, Գիշերը, Հիպնոս, Երազք ու Մահը կը բնակէին։ Երկրորդն էր՝ ոճրագործներու դըժոխքը՝ ուր միայն ողբ ու կոծ կը լսուէր վասն զի հոգիները իրենց խղճէն կը տանջուէին և աշխարհակալները անտանելի տաքով ու ծարաւով մը կը տառապէին։ Երրորդը՝ ամենէ խորունկն էր՝ և

Տարտարոս կը կոչուէր՝ մեծ չարագործներու յատուկ. ասոր մէջ մշտավառ կրակներ ու ահռելի հրէշներ կային՝ ու շրջապատուած էր Փլէկէթոն՝ որու ջուրերը ծծումբէ էին, ու Ստիքս գետերով. արդէն ըսինք որ Ստիքսի վրայ եղած երդում մը անդրժելի էր (տես երես 8), վասն զի զայն դրժողը՝ երկնքէն տասը տարի կ'աքսորուէր ու Նեքտար անունով երկնային ըմպելիէն կը զրկուէր։

Դժոխքէն կ'ելնէր նաև Կոկիտոն գետը՝ որու ջուրերը հոն եկողներու արցունքէն շինուած էին։

Չորրորդն էր առաքինի հոգիներու բնակարան Եղիսեան դաշտը՝ ուր յաւերժական գարուն մը կը տիրէր. արևն ու աստղերը միշտ կը փայլէին հոն՝ և արդարները կը շրջէին հոտաւէտ ծաղիկներու, վարդենիներու և մրտենիներու հովասուն շուքին տակ։ Անոյշ կարկաչով մը կ'անցնէր անկէ Լէթէ՝ մոռացօնի գետը, որու ջուրէն խմողը կեանքի ամեն վիշտերը կը մոռնար. օրհնած հող մը՝ տարին երեք անգամ ծաղիկներ կամ պտուղներ յառաջ կը բերէր և արդարները երբէք չծերանալով՝ միշտ այն տարիքին մէջ կը մնային՝ ուր ամենէ աւելի երջանիկ եղած էին։ Այս եդեմական պարտէզը՝ ըստ ոմանց Քանարեան կղզիներու, և ըստ ոմանց՝ լուսնին մէջ կը գտնուէր։

Երէբոսի ու Գիշերի որդին՝ Քարոն՝ դժոխքի նաւավարն էր ու հոգիները կ'անցընէր Ստիքս գետէն. ծերունիի դէմքով կը նկարագրուի։ Ամեն ստուեր իբրև անցագին՝ դրամ մը պէտք էր շնորհել անոր և ասոր համար Յոյներն ու Հռոմայեցիք իրենց մեռելներու բերանը դրամ մը կը

դնէին որ շատ մումիաներու լեզուին տակ աղ գտնուած է ։ Անթաղ մնացած մեռելներու հոգիները՝ Քարոնի նաւակը չմտած՝ հարիւր տարի գետեզերքը կը թափառէին ։

Ստուերներու դուրս ելնելը՝ ու կենդանի մարդերու ներս մտնելը արգիլելու համար՝ դժոխքին դուռը՝ Կերբերոս անուն երեքգլխի շունը կը հըսկէր ։ Սակայն կ'ըսուի թէ քանի մը դիւցազուններ զայն խաբած են փոխինդով ։ Որփէոս իր քնարով քնացուցած՝ և Հէրքիւլէս շղթայի զարկած է զայն ։

Դժոխքին մէջ կը թագաւորէր Պղուտոն՝ Արամազդի եղբայրը ։ Ասիկա անգամ մը Էթնա լեռին հանած որոտանման ձայներէն սարսափած՝ դժոխքէն ելաւ Սիկիլիա գնաց անոնց պատճառը հասկընալու համար՝ և հոն իր Դեմետր քրոջը աղջիկը Պրոզէրբինը կամ Պերսէփոնէն տեսնելով միտքը դրաւ զայն գողնալ, վասն զի չէր գտնուած դիցուհի մը՝ որ իրեն կենակից ըլլալ ուզէր՝ իր տգեղութեան՝ և խաւարանդ բնակարանին պատճառաւ՝ որ դժոխքին մէջ էր ։ ուստի օր մը երբ Պերսէփոնէ իր ընկերներով ծաղիկ կը ժողվէր, Պղուտոն յափշտակեց զանի և իր չորս սև ձիերով լծուած կառքին մէջ պահելով փախաւ ։

Դեմետրը՝ որ Սիկիլիոյ թագուհին էր՝ իր սիրելի աղջկան գլուխը եկածը իմանալով սկսաւ ամեն տեղ շրջիլ ու զանի փնտռել ։ Իր ճամբորդութեան մէջ անգամ մը պառաւ կնոջ մը հիւղը մտաւ ջուր խմելու համար, և այնքան ախորժելով խմեց որ հոն գտնուող տղայ մ'սկսաւ խնդալ ։ Դեմետրը ասոր վրայ բարկանալով՝ գաւաթին մէջ մնացած

ջուրը անոր երեսին նետեց և տղան իսկոյն մողէսի փոխուեցաւ։ Լիկիայէ անցնելու ատեն ալ գեղացիները գորտի փոխեց աղբիւրի մը ջուրը պղտորելնուն համար՝ ուրկէ իր ծարաւը յագեցընել կ'ուզէր նա։ Դեմետր՝ վերջապէս Արեթուսա յաւերժահարսէն Պերսէֆոնէի ուր ըլլալն իմանալով գնաց Արամազդի ոտքն ընկաւ և աղաչեց որ իր աղջիկը իրեն վերադարձընէ։

Արամազդ Դեմետրի վրայ գթալով՝ հրամայեց որ Պերսէֆոնէ վեց ամիս իր ամուսնոյն՝ ու վեց ամիս ալ իր մօրը քով անցընէ։

Պղուտոն նաև Այտոնէօս կը կոչուի, այսինքն՝ անժպիտ, վասն զի ծիծաղը դժոխքէն հեռու է. խոժոռ դէմքով կը նկարագրուի նա՝ դժոխքին մէջտեղ եպենեայ գահի մը վրայ նստած, Պերսեֆոնէ իր ձախ կողմն է, իր արքանեակները զինքը կը շրջապատեն, այսինքն՝

Դժոխքի երեք դատաւորները որ Արամազդի որդիներն էին, այսինքն՝ Էակոս, Ռատամանտ և Մինովս Կրետէի թագաւորը։ Ասոնք Հերմէսի բերած հոգիները կը դատէին. վերջնական վճիռը Մինովս կու տար ձայնից հաւասարութեան ատեն, անոր համար մէկ ձեռքը արքունի գաւազան և միւսը աղետալի սափորով կը նկարագրուի, որու մէջ ամեն մահկանացուներու դատակնիքը կայ։

Եւմենեայք կամ Կատաղիք՝ Երկպառակութեան աղջիկները, որ նմանապէս երեք քոյր էին, այսինքն՝ Թիսիփոն, Մեգերա և Ալէքտօն։ Ասոնք միշտ յանցաւորները կը հալածէին երկրի վրայ և դժոխքի մէջ. կը նկարագրուին ձեռքերնին վառուած ջա-

հերով և մազի տեղ՝ իրարու հետ հիւսուած օձերով և հօլամուկի թևերով։ Աթենքի մէջ Արիսպագոսի ատենին առջև ելնողը՝ ասոնց վրայ պէտք էր երդնուլ որ իրաւը պիտի խօսի։

Պարկայք՝ Երէբոսի և Գիշերի երեք աղջիկներն էին, այսինքն՝ Քլօթօ, Լաքեզիս ու Ատրոպէ։ Քլօթօ՝ կրտսերագոյնը՝ ձեռքը աղեկատ մ'ունէր, Լաքեզիս՝ մեր օրերը կը մանէր, իսկ Ատրոպէ՝ անդրանիկը՝ մկրատով մը մեր կեանքի թելը կը կտրէր։ Ասոնք ալ խոժոռ դէմքով կը նկարագրուէին, գլուխնին ճերմակ բուրդէ պսակներով՝ որոնց մէջ նարկիսներ խառնուած են։

Գիշերը՝ Երկնի և Երկրի աղջիկն էր և Պարկաներու մայրը․ կը նկարագրուի կառքի մէջ նստած և աստղերով զարդարուն վերարկուով մը ծածկուած, առջևէն կ'երթան համաստեղութիւնները։

Քունը կամ Հիբնոս՝ Երէբոսի և Գիշերի որդին էր, Երազներու հայրը, Մահու և Ցուսոյ եղբայրը․ ասոր պալատը խոր քարայր մ'էր՝ ուր արևու ճառագայթները չէին թափանցեր և որու մուտքը գոցուած էր մեկոններու ահագին փունջերով․ կակաչներով պսակուած և տերևէ անկողնի մը վրայ երկնցած կը նկարագրուի, իր շուրջը կը թռին Երազներն և իր որդին ու պաշտօնեայն Մորփէոս՝ որ Երազներու առաջինն ըլլալով կանխաւ կ'իմացընէր ճշմարտութիւնը։ Մորփէոս թիթեռնի թևերով կը նկարագրուի՝ ձեռքը մեկոն։

Երազները՝ ամենքն ալ Քունի որդիներն էին՝ և ծովի աւազներու չափ շատ, ասոնցմէ ոմանք խըրճիթներու՝ և ոմանք պալատներու այցելութիւն

կ՚ընէին. կը նկարագրուին չղջիկի մեծ թևերով։

Մահը՝ Գիշերի աղջիկն էր, կը նկարագրուէր սև տղայի դէմքով, թևերով և ձեռքը ուռկան մը՝ որով իր զոհերը կը բռնէր. երբեմն նաև կմախքի կերպարանքով կը նկարագրուի՝ ձեռքը սուր և մանգաղ։

Մանէս կամ Ուրուականները՝ գերեզմաններու վրայ կը հսկէին, ասոնք երկաթներու ձայնէն կը փախչէին և կրակը կամ լոյսը կը սիրէին, անոր համար հինները գերեզմաններու մէջ վառուած ճրագներ կը դնէին։ Նոճիի ծառը ասոնց նուիրուած էր։

Նեմէսիս՝ Արամազդի և Գիշերի աղջիկն էր, ու պաշտօն ունէր չարերը պատժելու և բարիները վարձատրելու, բոլոր երկրի վրայ կ՚իշխէր ու խիստ յարգի էր։ Հռոմի մէջ բագիններ ունէր. պատերազմի երթալէ յառաջ զօրականք զոհեր կը մատուցանէին իրեն.

Բլութոս՝ հարստութեան աստուածը՝ Դեմետրի որդին էր, դժոխքի աստուածներու կարգը դասուած է, վասն զի արծաթն ու ոսկին երկրի խորերէն կը հանուին։

Բլութոս ծերունիի կերպարանքով կը նկարագրուի ձեռքը քսակ մը, ինքը կաղ է, ծանրաքայլ առջև կ՚երթայ՝ բայց թռելով ետ կը դառնայ, վասն զի հարստութիւնը կամաց կամաց կը վաստկուի և շուտով կը մսխուի. կոյր է՝ վասն զի իր գանձերը հաւասարապէս թէ բարի և թէ չար մարդերու կը բաշխէ։

Ճակատագիրը (տես երես 5) Քաոսի և Գիշերի որդին էր՝ որ իր ձեռքը ունէր մարդերու ճակատագիրերը պարունակող գիրք մը. կը նկարագրուի երկրագունտի մը վրայ։

Տարտարոսի մէջ տանջուող մեղաւորներու մէջ ամենէ յատուկ յիշելու է Տիտանի զաւակ՝ հսկաները, որոնք Էտնա լեռին տակ ճնշուած էին Արամազդի դէմ կռուելնուն համար (տես երես 7)։ Կ'ըսեն թէ աս հսկաներէ մէկը՝ Թիֆոն՝ շարժած ատենը՝ երկրաշարժ կ'ըլլայ և Էտնայի հանած ձայները անոր հառաչանքներն ու ձայներն են։

Սիսիփ՝ Եւողի որդին՝ Ատտիկէն կ'ասպատակէր և ձեռքն ընկած ճամբորդները կ'սպաննէր։ Արամազդ զանի պատժելու համար դժոխք գահավիժելով դատապարտեց որ ահագին ժայռ մը լեռի մը գագաթը հանէ, բայց ժայռը՝ նոյն իսկ իր ծանրութենէն վար գլտորելով՝ Սիսիփ վայրկեան մը հանգիստ չէր ունենար։

Տիտոս՝ Երկրի որդին՝ ահագին հսկայ մ'էր, որու մարմինը եօթ արտավար տեղ կը բռնէր, ամի Լաթօնի նկատմամբ անպատկառ ընթացք մ'ունենալուն համար՝ Ապողոնէն սլաքի հարուածներով ըսպաննուեր ու դժոխք ընկեր էր՝ ուր անգղ մը միշտ իր լեարդը կը կրծէր, և լեարդը միշտ կ'աճէր։

Ֆլէկիաս՝ Արէսի որդին՝ Քորօնիս անունով աղջիկ մ'ունէր, որմէ Ապողոն իր Ասկղէպիոս տղան ունեցաւ։ Ֆլէկիաս՝ Ապողոնի իրեն ըրած նախատինքին վրէժը լուծելու համար՝ Ապողոնի Տէլֆեան տաճարը այրեց՝ և աստուածները պատժեցին զինքը Տարտարոս գահավիժելով՝ ուր իր գլխին վրայ կախուած ժայռ մը՝ զինքը միշտ ահուդողի մէջ կը պահէր։

Իքսիոն՝ Հերայի սիրահարելուն համար՝ Արամազդ զանի անիւի մը կապեց որ օձերով շրջապատուած էր ու միշտ կը դառնար։

Տանթալ՝ Լիտիայի թագաւորը՝ Թմոլիւսի և Բլօթօ անուն յաւերժահարսի մ՚որդին էր։ Անգամ մ՚ալ աստուածները անոր տունը հիւր գացեր էին՝ Տանթալ՝ անոնց գաղտնիքները թափանցելու կարողութենէն՝ աստուած ըլլանին հասկընալու համար՝ իր Բէլոբս որդւոյն մարմինն ալ ուրիշ մսերու հետ խառնած՝ սեղանին վրայ դրաւ։ Դեմետր այս սոսկալի խորտիկը պատուական գտնելով՝ տղուն մէկ ուսը կերաւ, բայց Արամազդ Տանթալի անողորմ վարպետութիւնը հասկընալով՝ Բելոբսը կենդանացուց Դեմետրի կերած ուսին տեղ փղոսկրէ ուս մը տալով անոր՝ և Տանթալը պատժեց զանի Տարտարոսի մէջ գահավիժելով ուր նա յաւիտենական քաղցով և ծարաւով կը տառապէր լճի մը մէջ, վասն զի ամեն անգամ որ իր չորցած շուրթերը զինքը շրջապատող ջրին կը մօտէին՝ ջուրը կը հեռանար, ասկէ զատ անօթութենէ ալ կը տանջուէր մրգաստանի մը մէջ՝ վասն զի ամեն անգամ որ ձեռքը կ՚երկնցընէր պտուղ մը փրցընելու՝ հովը ծառերու ոստերը մինչև երկինք կը բարձրացընէր։

Դանաոս՝ Արգոսի թագաւորը՝ յիսուն աղջիկ ունէր, որոնք իրենց հօրը անունով Դանայեան ըսուեցան։ Դանաոսի եղբայրը՝ Եգիպտոս՝ որ համանուն երկրի վրայ կ՚իշխէր՝ յիսուն տղայ ունէր զորս իր քեռորդիներու հետ կարգեց. ամենուն հարսնիքը մի և նոյն օրը կատարուեցաւ։ Բայց Դանաոս՝ պատգամէն իմանալով որ իր փեսաներէ մէկը զինքը գահէն վար պիտի առնէ՝ իր աղջիկներուն հրամայեց որ իրենց փեսաները՝ հարսնիքին առջի գիշերը մեռցընեն։ Դանաոսի հրամանը կատարուեցաւ և

միայն Իզէրմնեսդրա՝ իր Լինկէ ամուսնոյն խնայեց։ Արամազդ այս քառասունինը անօրէն աղջիկները պատժեց՝ Տարտարոսին մէջ ծակուած տակառ մը յաւիտենապէս լեցնելու դատապարտելով զանոնք։

---

# ԵՐԿՐԻ ԱՍՏՈՒԱԾՆԵՐ

---

## ՀԷՍՏԻԱ, ՌԷԱ, ՎԵՍԹԱ, ԴԵՄԵՏՐ

Հէստա և Ռէա՝ որոնց վրայ արդէն խօսած ենք (երես 4) իբրև երկրի աստուածներ ամեն տեղ յարգի էին։

Վեստա՝ Կրօնոսի և Ռէայի աղջիկն էր՝ որ իր եղբարցը հետ հօրմէն կլլուելէ ետքը՝ նորէն աշխարհ եկեր էր Արամազդի շնորհիւ։ Ասիկա կրակի դիցուհին էր և խիստ յարգուած՝ Փռիւգիայի մէջ՝ ուրկէ Էնէաս իր արձանը Իտալիա բերած էր։ Նումա Պոմպիլիոս Հռոմի թագաւորը՝ անոր անուան տաճար մը կանգնեց, որու խորանին վրայ մշտավառ կրակ մը կար. աստ՝ ինչպէս նաև Հէստայի տօներու մէջ՝ էրիկ մարդ մտնելը արգիլուած էր։ Վեստայի տաճարին քուրմերը վեց նորատի կոյսեր էին՝ որոնք Վեստեանք կը կոչուէին՝ ու պաշտօն ունէին նուիրական կրակը միշտ վառ պահելու. եթէ իրենց անհոգութեամբ մարէր այն՝ խստիւ կը պատ-

ժուէին, վասն զի Հռոմայեցիք անոր մէջ իրենց համար մեսալուտ վտանգ մը կը տեսնէին. մարած կրակը հասարակ կրակէ մը չէին վառեր՝ այլ միայն արեւու ճառագայթներէ։ Կուսութեան ուխտին դէմ մեղանչող քրմուհին՝ ողջ ողջ կը թաղուէր։

Դեմետր՝ Վեստայի քոյրն էր և հունձքերու վրայ կ'իշխէր։ Ան՝ իր աղջիկը գտնելու համար ըրած ճամբորդութեան մէջ (տես երես 36) գտած հիւրընկալութեան փոխարէն՝ երկրագործութիւն սորվեցուց մարդոց։ Գեղեցիկ կնոջ մը կերպարանքով կը նկարագրուի, գլուխը հասկերով պսակուած, տիրնքը ուռած՝ որովհետև մարդկային սեռի սնուցիչն է նա, մէկ ձեռքը հասկեր կամ մանգաղ՝ և միւսը ջահեր ունի. իր կառքը առիւծներով կամ օձերով լծուած է։ Իր տօները Էլևսիսեան կը կոչուէին, վասն զի Դեմետր՝ ամենէ աւելի Ատտիկէի Էլևսիս քաղաքին մէջ յարգլի էր. այս տօներու արարողութիւնները խիստ գաղտնի պահուելուն՝ Էլևսիսի գաղտնիք ալ կ'ըսուին։

## ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ԱՍՏՈՒԱԾՆԵՐ

Մոմոս՝ հեգնութեան և կատակի աստուածն էր, սաստիկ ծաղրասէր ըլլալուն՝ նոյն իսկ աստուածներու պակասութիւնն իրենց երեսին կը զարնէր. Անգամ մը Պոսիդոն, Հեփեստէս և Աթենաս իրենց գործերու պատուականութեան վրայ մէջերնին վիճելու ատեն՝ զինքը դատաւոր դրին, և Մոմոս պարսաւեց զՊոսիդոն որ իր շինած ցուլին եղջիւրները աչքերուն առջև դրած չէր՝ որպէս զի

*միայն Իբէրմնեստրա՝ իր Լինկէ ամուսնոյն խնա- յեց։ Արամազդ այս քառասունինը անողորմ աղ- ջիկները պատժեց՝ Տարտարոսին մէջ ծակուած տա- կառ մը յաւիտենապէս լեցընելու դատապարտելով զանոնք ։*

# ԵՐՐՈՐԴ ԱՍՏՈՒԱԾՆԵՐ

—

## ԷՍՏԱ , ՌԷԱ , ՎԵՍԹԱ , ԴԵՄԵՏՐ

*Էստա և Ռէա՝ որոնց վրայ արդէն խօսած ենք (երես 4) իբրև երկրի աստուածներ ամեն տեղ յարգի էին ։*

*Վեստա՝ Կրօնոսի և Ռէայի աղջիկն էր՝ որ իր եղբարցը հետ հօրմէն կլլուելէ ետքը՝ նորէն աշ- խարհ եկեր էր Արամազդի շնորհիւ ։ Ասիկա կրակի դիցուհին էր և խիստ յարգուած՝ Փռիւգիայի մէջ՝ ուրկէ Էնէաս իր արձանը Իտալիա բերած էր։ Նու- մա Պոմպիլիոս Հռոմի թագաւորը՝ անոր անուան տաճար մը կանգնեց, որու խորանին վրայ մշտա- վառ կրակ մը կար․ ասոր՝ ինչպէս նաև Էստայի տուներու մէջ՝ էրիկ մարդ մտնելը արգիլուած էր ։ Վեստայի տաճարին քուրմերը վեցը նորատի կոյսեր էին՝ որոնք Վեստեանք կը կոչուէին՝ ու պաշտօն ու- նէին նուիրական կրակը միշտ վառ պահելու․ եթէ իրենց անհոգութեամբ մարէր այն՝ խստիւ կը պատ-*

ժուէին, վասն զի Հռոմայեցիք անոր մէջ իրենց համար մնայուն վտանգ մը կը տեսնէին. մարած կրակը հասարակ կրակէ մը չէին վառեր՝ այլ միայն արեւու ճառագայթներէ: Կուսութեան ուխտին դէմ մեղանչող քրմուհին՝ ողջ ողջ կը թաղուէր:

Դեմետր՝ Վեստայի քոյրն էր եւ հունձքերու վրայ կ'իշխէր: Ան՝ իր աղջիկը գտնելու համար ըրած ճամբորդութեան մէջ (տես երես 36) գտած հիւրընկալութեան փոխարէն՝ երկրագործութիւն սորվեցուց մարդոց: Գեղեցիկ կնոջ մը կերպարանքով կը նկարագրուի, գլուխը հասկերով պսակուած, ստինքը ուռած՝ որովհետեւ մարդկային սեռի սնուցիչն է նա, մէկ ձեռքը հասկեր կամ մանգաղ՝ եւ միւսը ջահեր ունի. իր կառքը առիւծներով կամ օձերով լծուած է: Իր տօները Էլեւսինեան կը կոչուէին, վասն զի Դեմետր՝ ամենէ աւելի Ատտիկէի Էլեւսիս քաղաքին մէջ յարգի էր. այս տօներու արարողութիւնները խիստ գաղտնի պահուելուն՝ Էլեւսիսի գաղտնիք ալ կ'ըսուին:

## ԵՐԿՐՈՐԴԱԿԱՆ ԱՍՏՈՒԱԾՆԵՐ

Մոմոս՝ հեգնութեան եւ կատակի աստուածն էր, սաստիկ ծաղրասէր ըլլալուն՝ նոյն իսկ աստուածներու պակասութիւնն իրենց երեսին կը զարնէր: Անգամ մը Պոսիդոն, Հեփեստէս եւ Աթենաս իրենց գործերու պատուականութեան վրայ մէջերնին վիճելու ատեն՝ զինքը դատաւոր դրին, եւ Մոմոս պարսաւեց զՊոսիդոն որ իր շինած ցուլին եղջիւրները աչքերուն առջեւ դրած չէր՝ որպէս զի

կենդանին կարենայ իր թշնամին ապահովապէս զարնել, Հեփեստէսը պարսաւեց որ իր շինած մարդուն սրտին վրայ պզտիկ պատուհան մը բացած չէր՝ որպէս զի անոր ամենէ գաղտնի խորհուրդները տեսնուին, և 'ի վերջէ Աթենասն ալ պարսաւեց որ իր շինած տունը դիւրատար չէր՝ որպէս զի կարելի ըլլայ գէշ դրացիներէ դիւրաւ հեռանալ։ Իր կծու հեգնութիւններու պատճառաւ՝ Մոմոս երկնքէն արտաքսուեցաւ։

Պելլոնա՝ Արէսի քոյրն էր (տես երես 11), հետեւաբար պատերազմի աստուածուհի կը համարուէր։

Բաղդը՝ մարդկային իրերու ղեկը իր ձեռքն ունէր և բարիքն ու չարիքը՝ իր հաճոյից համեմատ կը բաշխէր, կը նկարագրուէր կոյր աչքերով, կընտակ գլխով, երկու ոտքը թեւերով՝ որոնց մէկը օդին մէջ՝ և միւսը դարձող անիւի մը վրայ թեթեւակի կռթնած է՝ 'ի նշան իր փոփոխականութեան, ամէ չափազանց յարգի էր Հռոմայեցւոց մէջ։

Աստրէա՝ արդարութեան աստուածը՝ ոսկեդարու ատեն աշխարհի վրայ կը բնակէր, բայց նախ քաղաքներէ ու ետքը գիւղերէ արտաքսուելով մարդերու անիրաւութենէն՝ երկինք քաշուեցաւ ու կշեռ համաստեղութեան փոխուեցաւ, երեք աղջիկ ունեցաւ՝ Իրաւունք, Օրէնք և Խաղաղութիւն։

Ֆերոնիա ազատութեան աստուածուհի և մանաւանդ ստրուկներու պաշտելին էր. ամեն տեղ խիստ յարգի և գլխարկը ձեռքը կը նկարագրուէր։

Արպօկրատ լռութեան աստուած էր, կը նկարագրուի մատը բերնին վրայ դրած մարդու մը պէս. դեղձի ծառը մասնաւորապէս անոր նուիրուած էր՝

Թրովճեան ասս ծառին տերեւները լեզուի կը նմա- նին եւ իր պտուղները սիրտի, խորհրդաւոր նշան համաձայնութեան՝ որ պէտք է գտնուի մարդկային սիրտի եւ լեզուի մէջ։ Ասոր արձանը մեհեաններու դրան առջեւ կանգնած էր՝ Պլուտարգոսի ըսածին նայելով, աստուածներու անիմանալի բնութեան վրայ խօսիլը արգիլելու համար։

Ասկղեպիոս՝ ինչպէս որ ըսինք Ապողոնի եւ Քորօ- նիսի տղան էր՝ (երես 40) Քիրոն յուշկապարիկէն բժշկութիւնը լաւ սորվելով այս արհեստին հնա- րիչը համարուեցաւ։ Ասի նոյն իսկ մեռելները կը կենդանացընէր, այնպէս որ Պղուտոն բարկանալով Արամազդին բողոքեց եւ Արամազդ ալ շանթահա- րեց զանի, բայց ետքը Ապողոնի խնդրանօք երկինք ընդունուելով աստեղատունի մը փոխուեցաւ որ օձակալ կը կոչուի։ Նոյն իսկ իր նշանը օձ է՝ եւ կը նկարագրուի գահի վրայ նստած՝ ձեռքը օձա- պատ գաւազան. հաւեր ու աքաղաղներ կը նուի- րէին իրեն իբրեւ արթնութեան նշան։

## ԴԱՇՏԱՅԻՆ ԱՍՏՈՒԱԾՆԵՐ

Դաշտային կամ գեղջական աստուածներու ա- մենէ մեծն էր Պան՝ որ հովուական սրինգը գտաւ. կը նկարագրուի զզուելի դէմքով, ցիրուցան մօրու- քով ու մազերով, ճակատը եղջիւրներով ու մէջքէն վար՝ այծի կերպարանքով։ Ասի շատ յարգի էր Ե- գիպտոսի, Արքատիաի ու մանաւանդ Հռոմի մէջ ուր 'ի պատիւ իրեն տօներ կը կատարուէին որոնց մէջ իր քուրմերը բոլորովին մերկանդամ փողոց-

ները կը վանէին։ Պան՝ Յունարէն ամէն կը նշանակէ և այս աստուածը իրօք իբրև տիեզերքի նշանաբանը կը նկատուէր։ Կ'ըսուի թէ երբ Կոլուացիք իրենց Վրէննոս զօրապետին առաջնորդութեամբ Տելփեան տաճարը կողոպտելու եկան՝ յանկարծ մեծ վախի մը մէջ ձգեց զանոնք Պան՝ և ասկէ սովորութիւն եղաւ յանկարծական վախերը Պանական կոչել։

Ֆլօրա՝ Զեփիւռի հետ ամուսնանալով ծաղիկներու թագաւորութիւնը ստացաւ, կը նկարագրուէր յաւերժահարսի դէմքով, ծաղիկներով պսակուած, ձախ ձեռքը ծաղկի փունջեր՝ կամ առատութեան եղջիւր մը։

Բոմոնա՝ պտուղներու աստուածուհի էր, իր անունը կը ծագի Լատիներէն pomum բառէն՝ որ խնձոր կը նշանակէ. կը նկարագրուէր որթի տերևներով ու խաղողներով պսակուած՝ ձեռքը սքանչելի պտուղներով լի՝ կողով մը։

Բրիապ՝ Աստղիկի ու Բագոսի որդին՝ պտղատու ծառերու աստուածն էր, Հռոմայեցիք անոր արձանը պարտէզներու մէջ կը դնէին. կը նկարագրուէր մարդկային գլխով՝ այծի ականջներով և եղջիւրներով։

Բալէս՝ հովիւներու և հօտերու աստուածուհին էր, անոր տօնը կը կատարուէր ամէն տարի մայիսի սկիզբը, հովիւները յարդի մեծ կոյտի մը կրակ կու տային՝ ու անոր բոլորտիքը կը պարէին. Բալէս Լատիներէն յարդ կը նշանակէ։

Թերմինոս՝ որ Լատիներէն սահման կը նշանակէ, արտի սահմաններու աստուածն էր, ու իր դրա-

ցիէն տեղ գողցողը կը պատժէր․ իր արձանները քառակուսի կամբրգաձև քարեր էին, միայն մարդկային գլուխ մ'ունենալով։

Սատիրները դաշտային աստուածներ էին՝ մարդկային կերպարանքով՝ բայց նոխազի ոտքերով, ասոնց ծերերը Սելենէ կը կոչուէին․ ամենէ ծեր Սելենէն՝ ինչպէս որ տեսանք (երես 24) Բագոսի դաստիարակ եղած՝ և անոր ընկերացած էր 'ի Հնդկաստան․ Սելենէ գինով վիճակի մէջ կը նկարագրուի, էշի մը վրայ նստած։

Ֆաւոնները՝ Սատիրներու շատ կը նմանէին, ասոնք կ'իջնէին Լատիններուն Ֆաւոն թագաւորին տղէն՝ որ մշակութեան արհեստը սորվեցուցած էր մարդկան։

Ներէիտներէ ու Նայատներէ զատ՝ (տես երես 28–32) խումը յաւերժահարսեր ալկային, որք են՝

Տրիատները և Համատրիատները՝ անտառները կը պահէին ու իրենց սիրած ծառերը կտրող մարդիկը կը պատժէին։

Օրէադները լեռները կը պահէին, և երբեմն Տիանայի կ'ընկերանային որսի գացած ատենը։

Ներէիտներէ ամենէ գեղանին էր Թէտէթիս՝ զոր Արամազդ, Պոսիդոն և Ապողոն իրենց կնութեան առնել ուզեցին, բայց պատգամէ մ'իմանալով որ անորմէ ծնելիք տղան իր հօրմէն մեծ պիտ' ըլլայ, իրենց դիտաւորութենէն ետ կեցան՝ ու զան Պէղէոսի թողուցին որ մեծին Աքիլլէսի հայրը եղաւ։

Յաւերժահարսներու մէջ նշանաւոր եղաւ Արձագանգը՝ որ Արամազդի սիրահարութեանց օգնելուն համար՝ լսած խօսքերուն միայն վերջին վանկերը

կրկնելու դատապարտուեցաւ Հերայէն։ Այս վիճակին մէջ Արձագանգը Լիրիոպէ յաւերժահարսին Նարկիս տղուն սիրահարեցաւ, ու անոր անտարբերութենէն յուսահատ՝ ժայռի փոխուեցաւ։

Կուպիտոն (երես 13) զՆարկիս այս անտարբերութեանը համար խստիւ պատժեց. Նարկիս օր մը աղբիւրի մը մէջ իր դէմքը տեսնելով՝ ինքը իրեն սիրահարեցաւ ու մեռաւ, աստուածները իր վրայ գթալով՝ զինքը համանուն ծաղկին փոխեցին։

Նոճիի ծառն ալ կերպարանափոխ եղած պատանի մ'էր Կիպարիս անուն։ Աս պատանին իր սնուցած մէկ եղջերուն ակամայ սպաննելուն համար այնքան ցաւեցաւ որ ինքզինքը մեռցուց։ Ապողոն զան անմահացընելու համար՝ նոճիի փոխեց. Կիպարիս Յունարէն նոճի կը նշանակէ։

Թերափի անունով առտնին աստուածներ ալ կային որ իւրաքանչիւր մարդու պաշտպան կամ խնամակալ էին. ասոնք տուներու մէջ կը պաշտուէին ու առջևնին կանթեղ և խունկ կը վառուէր։

## ՀԵՐԱԿԼԷՍ

Հերակլէս ու Եւրիսթէ՝ Թեպէի Ամփիտրիոն թագաւորին Ալկմենէ կնոջ երկուորեակ զաւակներն էին. որոնք Ամփիտրիոնի պատերազմի գացած ատենը ծնան։ Հերակլէսի հայրն եղած էր Արամազդ՝ իսկ Եւրիսթէինը Ամփիտրիոն։ Հերա Ալկմենէին նախանձելով՝ երկու վիշապ ղրկեց Հերակլէսին դէմ որպէս զի զայն ուտեն, բայց Հերակլէս մանու-

կը գանոնք բռնելով խեղդեց։ Աթենասի աղաչելովը Հերա մեղմացաւ սակայն և նոյն իսկ գիջաւ Հերակլէսը դիեցնելու որպէս զի անմահ ըլլայ։ Բայց անգամ մը Հերակլէս այնքան ուժով անոր ստինքը խածաւ որ Հերայի կաթը դուրս ժայթքեց և երկնից երեսը՝ ծիր կաթին ըսուած լուսեղէն գօտին յօրինեց։ Քիրոն՝ Ասկղեպիոսի ուսուցիչը՝ Հերակլէսի աստղագիտութիւն և բժշկութիւն սորվեցուց, և Որփէոս երևելի քնարահարին դասատուն՝ Լինոս ալ՝ երաժշտութիւն. այլ Հերակլէս անգամ մը անորմէ խիստ յանդիմանութիւն մը լսելուն համար բարկանալով՝ քնարը անոր գլխին զարկաւ ու ըսպաննեց զանի։

Հերա վճռած ըլլալով որ Եւրիսթէ իրաւունք ունենայ միշտ Հերակլէսի հրամայելու՝ Եւրիսթէ իր իրաւունքը չարաչար գործածելով Հերակլէսը մեծ վտանգներու մէջ դրաւ՝ որոնք անոր տասներկու քաջագործութիւնները կը համարուին։

1 Նեմէի մօտ անտառի մը մէջ՝ վիթխարի առիւծ մը կար, Հերակլէս մեռցուց զան և մորթը իրեն վերարկու ըրաւ։

2 Լերնոսի ճին մէջ եօթնագլխի վիշապ մը կար, Հերակլէս՝ Եւրիսթէի հրամանաւ վրան յարձակեցաւ, բայց տեսնելով որ Հիդրայի գլուխները քանի կտրէր անոնց տեղ նորեր կը բուսնէին՝ իր լախտին մէկ հարուածով ամէնքն ալ ջախջախեց ու իր նետերը անոր թունաւոր արեան մէջ թաթխեց՝ անոնց ընելիք վէրքերը մահաբեր ընելու համար։

3 Ստոկալի կինճ մը Էրիմանթ լերին շրջակաները տակուվրայ կը բերէր, Հերակլէս այս գազանը կենդանի բռնելով Եւրիսթէի տարաւ։

4 Մենալեան լեռը ապաստան եղած էր պղնձի ոտքերով և ոսկի եղջիւրներով եղնիկի մը՝ զոր ոչ ոք կրցած էր բռնել, Հերակլէս զայն տարի մը հալածելէ ետքը բռնեց։

5 Արքադիայի Ստէնբալ լիճը՝ Հարբիներու բնակարանն էր՝ որոնք իրենց վրայ յարձակողներու դէմ սլաքի նման փետուրներ կ'արձակէին, Հերակլէս ամենքն ալ սպաննեց իր թունաւոր նետերով (երես 34)։

6 Կրետէի մէջ հրէշ մը կար զոր Պոսիդոն ղրկած էր այն տեղի Մինոս թագաւորը պատժելու, Հերակլէս Կրետէն այս պատուհասէն ազատեց (երես 28)։

7 Օժիաս թագաւորը՝ երեք հազար եզ պարունակող ախոռներ ունէր որոնք երեսուն տարիէն 'ի վեր մաքրուած չէին։ Հերակլէս Ալֆէ գետը դարձնելով ախոռներուն մէջէն անցուց ու մաքրեց զանոնք։ Բայց Օժիաս խոստացած վարձքը չհատուցանելուն համար Հերակլէս բարկանալով Օժիասը սպաննեց ու Էլիս քաղաքը կողոպտեց։

8 Թրակիոյ Դիոմետ թագաւորը իր ձիերը մարդկային միսով կը կերակրէր, Հերակլէս զանի սպաննեց ու նոյն ձիերուն առջեւը դրաւ։

9 Սպանիոյ Կերիոն թագաւորն ալ սպաննեց որ երեք մարմին ունէր։

10 Պոզիրիսի՝ հէներու ձեռքով գողցնել տուած Աթլաս թագաւորին աղջիկները ազատեց (երես 26) ու Պոզիրիսը սպաննեց, անոր համար Աթլասէ Եսպերեան պարտէզի խնձորներէն պարգեւ ստանալով Եւրիսթէին բերաւ։

11 Թէսէոսի աջակցութեամբ Ամազոններու յաղթեց որոնք Թրակիոյ մէջ բնակող պատերազմասէր կիներ էին և անոնց թագուհին գերի բռնեց։

12 Ի վերջէ Թէսէոսը ազատելու համար դժոխք իջնելով Կերբերոսը շղթայի զարկաւ (երես 36–36)։

Հերակլէս՝ առանցմէ զատ՝ շատ քաջագործութիւններ ըրաւ. Պրոմէթէն ազատեց (երես 25) անոր լեարդը կրծող անգղը սպաննելով ու զան Կովկաս լերին կապող շղթան կտրելով։

Յետոյ մինչև Քատիքս երթալով կարծեց որ աշխարհիս ծայրը հասեր էր, և հոն իրարու միացած երկու լեռները զատելով Ճիպրալթարի նեղուցը բացաւ. աս լեռները Հերակլեան սիւներ ըսուեցան։

Սակայն այսքան հրեշներու յաղթող դիւցազնը՝ ի վերջէ Լիտիայի Օմֆալ թագուհիին քով տկարացաւ ու անորմէ սիրուելու համար առիւծենին թողլով կնիկի հագուստ հագաւ և անոր ոտքը նստած րոք մանեց։

Հերակլէս՝ յետոյ Դէյանիր բամբիշին սիրահարեցաւ, բայց Նեսոս անուն յուշկապարիկը զանի ձեռքէն յափշտակել ուզեց, ուստի Հերակլէս Նեսոսը սպաննեց։ Նեսոս չմեռած՝ իր արիւնոտ հագուստը Դէյանիրի ընծայ տուաւ՝ ըսելով որ Հերակլէս յաւիտեան հաւատարիմ կ՚մնայ իրեն եթէ այն հագուստը հագնի. նախանձոտն Դէյանիր՝ Նեսոսի խօսքին հաւատալով զայն իր սիրականին հագցուց և Հերքիւլէս մոլեգնելով՝ ինքզինքը կրակը նետեց ու այրեց։

Հերակլէս կամ Հերքիւլէս՝ կը կարծուի թէ մեր

Վահագնին հետ նոյն է, վասն զի Վահագն ալ իր՝ հայրենիքը հրէշներէ մաքրեց և յուշքօղէ ծէքը չինեց Ասորեստանի Բարշամին յարդը գողնալով, որ փախչելու ատեն ճամբան թափեցաւ։ Վահագն պաշտուած էր մանաւանդ Տարօն գաւառին Աշտիշատ գիւղին մէջ։

Հերակլէս երրորդական կարգի աստուած կը համարուի ինչպէս նաև Պերսէոս, Թէսէոս, Բէլլերոֆոն... 

## ՊԵՐՍԷՈՍ

Արկոսի Ակրիսիոս թագաւորը՝ իր Դանաէ աղջիկը պղնձէ աշտարակի մը մէջ գոցել տուաւ, վասն զի պատգամ մը ըսած էր որ իր թոռը զինքը գահէն վար առնելով պիտի սպաննէ։ Այլ Արամազդ ոսկիէ անձրևի կերպարանքով աշտարակը մտնելով Դանաէ Պերսէոսը յղացաւ։

Ակրիսիոս Պերսէոսի ծնիլը իմանալուն պէս՝ զանի իր մօր հետ նաւակի մը մէջ դնելով ծովին ալիքներուն յանձնեց։ Ալիքները այս նաւակը Սերիփ կղզին նետեցին, ուր Պոլիտիկթիս թագաւորը զանոնք ընդունելով՝ Պերսէոսը մեծցուց ու կրթեց։

Յետոյ Պոլիտիկթիս Դանաէի սիրահարելով ուզեց Պերսէոսը հեռացնել և զանի Կորկոնեան երեք քոյրերը՝ Մեդուզան, Եւրիալէն ու Սթենոն, որ շրջակայ երկիրները կ՚աւերէին՝ սպաննելու ղրկեց. ասոնք մէկ աչք ու մէկ ակռայ ունէին որ կինճի ակռայէն երկայն էր, ձեռքերնին արոյրէ, օձէ մազեր ունէին ու իրենց նայուածքը զմարդ կը քարացնէր։

Աստուածները Պերսէոսի վրայ գթալով զան իրենց պաշտպանութեան տակ առին, Պղուտոն իր սաղաւարտը փոխ տուաւ անոր, Աթենաս իր վահանը, Հերմէս իր թեւերը ու ադամանդէ սուր մը։

Պերսէոս գնաց ասոնցմով Կորկոնեան քոյրերը սպաննեց։ Մետիւզաի գլխէն ելած արիւնէն ծնաւ Պէգասոս օդապար ձին որ իսկոյն Էլիկոնի գագաթը թռաւ ու իր դափրովը Իփօքրէնեան աղբիւրը բղխեցաւ։ Պերսէոս անոր վրայ հեծնելով՝ օդին մէջէն Մաւրիտանիա գնաց ուր Աթլաս կը թագաւորէր. աս իշխանը գուշակէ մը լսած ըլլալով որ Պերսէոսէ ուլոք է զգուշանայ՝ զան չհիւրընկալեց, ուստի Պերսէոս պատժեց զանի Մետիւզայի գլուխը ցուցնելով՝ որով Աթլաս քար կտրեցաւ, (տես երես 27)։ Նոյնպէս ծովային հրեշ մը սպաննելով՝ ազատեց Եթովպիոյ թագաւորին Անտրոմէդ աղջիկը որ անոր ճարակ պիտի ըլլար, և զանի իրեն կնութեան առաւ։

Պերսէոս Մետիւզայի գլխով շատ յաղթութիւններ ընելէ ետքը՝ զայն Աթենասի նուիրեց, անոր համար միշտ Աթենասի վահանին վրայ կը նկարագրուի այն։

Պերսէոս լսելով որ Լարիսայի թագաւորը 'ի պատիւ Արամազդայ հանդէսներ կ'կատարէր, հոն գնաց իր քաջութիւնը ցուցնելու, բայց քարամըրցումի մէջ իր նետած քարը դիպուածով մէկուն գլխին գալով՝ զան սպաննեց, այս մարդը՝ իր թոռէն մեռնելու սահմանուած Արկոսի թագաւոր Ակրիսիոսն էր։

Պերսէոս իր պապը մեռցնելուն վրայ անմխիթար Տիրինթոս քաշուեցաւ։

## ԹԷՍԷՈՍ, ՔԵՐԻԹԷՈՍ

Թէսէոս՝ Աթէնքի Եգէոս թագաւորին տղան՝ Հերակլէսի բարեկամն էր։ Էթրա՝ Եգէոսի կինը՝ դեռ յղի էր, երբ Եգէոս Պելոպոնեսէն Աթէնք երթալու ատեն՝ իր սուրը ահագին ժայռի մը տակ պահելով Էթրայի պատուիրեց որ եթէ տղայ զաւակ բերէ՝ զան իրեն չղրկէ մինչև որ անի կարող ըլլայ նոյն քարը վերցնելով իր սուրը բերելու։ Թէսէոս տասնուեօթը տարեկան չկար՝ երբ քարին տակէն հօրը սուրը առնելով, մէջքը կապեց ու անոր քովը գնաց։

Թէսէոս Հերակլէսի քաջագործութիւններուն հետևեցաւ, նախ իր հայրենիքը՝ Աթէնքը ազատեց այն հարկէն որ Կրետէի Մինովս թագաւորին կը վճարէր անոր եօթը մանչ ու եօթը աղջիկ ղրկելով որ Եգիպտոսի լափիրինթոսի ձևով շինուած բանտին Մինոտոր հրէշին ճարակ կ'ըլլային։

Թէսէոս տասներեք մարդազոհերուն ընկերանալով Կրետէ գնաց զայն սպաննելու, բայց պիտի չկրնար իր նպատակին հասնիլ, եթէ Արիադնէ՝ Մինովսի աղջիկը՝ իրեն սիրահարելով չօգնէր լափիրինթոսը մտնելու ատենը ձեռքը կծիկ մը փերձան տալով՝ որով Թէսէոս՝ Մինոտորը հեռացնելէն ետքը իր ընկերներով անկէ ելաւ ու Արիադնէն հետը առնելով Կրետէէ մեկնեցաւ, բայց ետքը ապերախտութեամբ զանի Նաքսոս կղզին թողուց։

Թէսէոսը Կրետէ տանող նաւուն առագաստնե-

րը սև էին 'ի նշան սուգին՝ որով համակուած էին Աթենացիք. Եգէոս իր տղուն ապսպրած էր որ եթէ յաղթական ետ դառնայ՝ զանոնք ճերմակի փոխէ, բայց Թէսէոս իր յաղթութեան ուրախութիւնով գինովցած՝ այս հրամանը մոռնալով առագաստները չփոխեց և Եգէոս, նաւուն սև առագաստներով դառնալը տեսնելով՝ կարծեց որ Թէսէոս մեռած է և յուսահատած ինքզինքը նետեց ծովը՝ որ Եգէան ըսուեցաւ, այն է Արշիպեղագոսը։

Թէսէոս իր հայրը թաղելէ ետքը՝ իր հպատակները մեծ իմաստութեամբ կառավարեց, անոնց օրէնքներ դրաւ ու հանդէսներ հաստատեց։ Թեսալիայի Լաբիթներու Բերիթէոս թագաւորը անոր անունը լսելով՝ ուզեց անոր քաջութիւնը փորձել և Ատտիկէի վրայ յարձակեցաւ. Թէսէոս իսկոյն անոր դիմացն ելաւ. բայց երբ երկու բանակները դիմացէ դիմաց եկան, երկու իշխանները իրարու վրայ անանկ զարմացում մը զգացին, որ զիրար գրկելով յաւերժական բարեկամութիւն մ'ուխտեցին։

Ասկէ քիչ ժամանակ ետքը՝ Բերիթէոս ամուսնանալով՝ յուշկապարիկները իր հարսնիքին հրաւիրեց, սակայն ասոնք գինովնալով անկարգութիւններ ըրին. —Թէսէոս և Հերակլէս անպատիժ չթողուցին զանոնք և Թեսալիայէ վռնտեցին։ Այս յուշկապարիկները իրենց ձիավարական տաղանդով նշանաւոր մարդեր էին։ Անոր համար բանաստեղծները զանոնք կէս մարդու և կէս ձիու կերպարանքով նկարագրած են։ Յուշկապարիկներէ ա-

մենէ նշանաւորներ եղան Քիրոն (երես 46–49) և Նեսոս (երես 51)։

Հերքիւլէսի աջակցութեամբ Թէսէոս՝ Ամազոն֊ներու վրայ յարձակեցաւ և անոնց յաղթելէ ետքը՝ անոնց Անտիոպէ կամ Իբօլիթ թագուհին իրեն կնութեան առաւ, բայց Անտիոպէ մեռնելով՝ Թէսէոս իր Բէրիթէոս բարեկամին հետ դժոխքը իջաւ անկէ Պղուտոնի Պերսեփոնէ կամ Պրօզերբին կինը գողնալու։

Բայց Կերբերոս՝ դժոխքին դուռը պահող շունը՝ Բերիթէոսը խղդեց, Թէսէոս շղթայի զարնուեցաւ մինչև որ Հերքիւլէս դժոխքը իջնելով՝ Կերբերոսը կապեց և զանի ազատեց (երես 51)։

Թէսէոսի ծերութիւնը դժբաղդ եղաւ սակայն, Աթենացիք իրեն դէմ ապստամբեցան, որով ստի֊պուեցաւ նա Սիրոս քաշուիլ· բայց Լիկոմէտ՝ այն տեղի թագաւորը, աթենացիները կաշառելով զա֊նի ժայռի մը վրայէ վար նետել տուաւ։ Շատ դա֊րերէ ետքը Աթենացիք Թէսէոսը յիշելով անոր ա֊նուան տաճար մը կանգնեցին· կ'ըսեն թէ Մարա֊թօնի կռուին մէջ այս դիւցազնը իրենց երևցաւ բոլորովին սպառազէն·

## ՔԱՍԹՕՐ ԵՒ ՊՕԼԻԿՏԻՍ

Անգամ մը Արամազդ Սպարդայի Տինտար թա֊գաւորին Լէտա կնոջմէ սիրուելու համար կարա֊պի կերպարանք մտաւ· Լէտա կարապին անոյշ ձայնին այնքան սքանչացաւ որ՝ երկու հաւկիթ ա֊

ծեց. մէկ հաւկիթէն ելան Քասթոր և Կլիթեմնես-թրա, և միւսէն Պօլիկտիս ու Հեղէն։ Քասթոր և Կլիթեմնեսթրա Տինտարի որդիքը ըլլալնուն մահկանացու էին՝ իսկ Պօլիկտիս և Հեղէն՝ Արամազդի որդիքը ըլլալնուն՝ անմահ, թէև Քասթոր և Պօլիկտիս սովորապէս Տինտարեանք ըսուած են։

Պօլիկտիս՝ գօտեմարտի՝ և Քասթոր ձիավարութեան մէջ քաջ էր։ Այս երկու եղբարքը՝ արշիպեղագոսի ծովահէնները ջնջեցին և մանաւանդ նշանաւոր եղան Ոսկեգեղմի արշաւանքին մէջ։

Ցեսոյ Լինկէոսի և Իտասի նշանուած երկու չքնաղ քոյրերը առևանգելնուն համար անոնց հետ մենամարտելու ստիպուեցան։ Քասթոր Լինկէսէն սպաննուեցաւ. բայց Պօլիկտիս ալ Լինկէոսը սպաննեց։ Իսկ Իտաս Արամազդէն շանթահարուեցաւ։

Պօլիկտիս՝ Քասթոր եղբօրը մահուան վրայ յուսահատ՝ Արամազդէն խնդրեց որ զանի անմահացնէ, բայց այս խնդիրը կարելի չըլլալով ամբողջակի կատարել՝ Արամազդ Պօլիկտիսի անմահութեան կէսը Քասթորին տուաւ, որով այս երկու եղբարք՝ որ միշտ ամենասերտ բարեկամութեամբ կապուած էին իրարու հետ, փոխփոխակի կ՚ապրէին ու կը մեռնէին, մինչև որ աստեղատունի փոխուեցան և Երկուորեակ անունով ծանօթ են կենդանակերպներու մէջ։ Իրենց անունը եղբայրական կամ բարեկամական սիրոյ նշանաբանը միացած է։

## ՈՐՓԷՈՍ

Որփէոս՝ աննման քերթողն ու երաժիշտը, Ապոլլոնի որդին էր։ Կ'ըսուի թէ անոր քնարին ու ձայնին անուշութիւնը ամենէ վայրենի կենդանիները կ'հանդարտեցնէր, և նոյն իսկ ծառերու կ'ազդէր։

Որփէոս Եւրիդիկէ յաւերժահարսին հետ կարգուեցաւ, բայց նոյն իսկ հարսնիքին օրը հարսը օձէ մը խայթուելով մեռաւ։ Որփէոս դժոխքը իջաւ Պղուտոնէն իր կինը խնդրելու համար և դժոխքին դուռը պահող Կերբերոս շունը իր քնարով քնացնելէ ետքը (երես 56) յաջողեցաւ նաև իր նուագով Պղուտոնի գութը շարժել։ Պղուտոն հաւանեցաւ Եւրիդիկէն ետ դարձնել այն պայմանաւ որ դժոխքէն ելնելու առեն իր կնոջմէն յառաջ քալէ և անոր երեսը չնայի մինչև որ Տարտարոսի սահմաններէն անցնի։ Սակայն Որփէոս անհամբեր գտնուելով՝ իր կինը յաւիտենապէս կորսնցուց և յուսահատ Ռոտոպ լեռը քաշուեցաւ։ Հոն օր մը Բագոսի քրմուհիները զինքը սպաննեցին իրենց նկատմամբ ցոյց տուած անտարբերութեանը համար և գլուխը Եպրը գետը նետեցին։ Որփէոսի գլուխը նոյն իսկ ջուրերուն մէջ ու անշունչ՝ տխուր ու վշտանուագ ձայներ կ'հանէր, զորս Արձագանքը կ'կրկնէր։

## ԿԱԴՄՈՍ

Կադմոս Փիւնիկէի Ագենոր թագաւորին տղան էր։ Ասի չքնաղ քոյր մ'ունէր Եւրոպէ անունով, զոր Արամազդ գողցաւ ճերմակ եզի մը կերպարանքը մտնելով։ Եւրոպէ այն միջոցին որ ծովեզերքը կ'պտըտէր՝ այս գեղեցիկ կենդանին տեսնելով անոր մօտեցաւ և համարձակեցաւ անգամ անոր վրայ նստիլ։ Արամազդ Եւրոպէն իր ուսերուն վրայ զգացածին պէս՝ ծովը նետուեցաւ և Կրետէ ելաւ։

Կադմոս իր քոյրը ամեն կողմ փնտռեց բայց չգտաւ։ Կ'ըսուի թէ նա ճամբորդութեան միջոցին Յունաստան հանդիպելով եգիպտական և փիւնիկեան աստուածներու պաշտօնը յունաց մէջ մտցուց, անոնց կարդալու և գրելու արհեստը սորվեցուց և իբրև աստուած պաշտուեցաւ իր մեռնելէն ետքը։

Տէտալ՝ Աթենացի երևելի անդրիագործ մ'էր, որ Կրետէի լաբիրինթոսը շինեց Մինովս թագաւորին հրամանաւ։ Սակայն ինքը նոյն անել բաւղին առաջին զոհը եղաւ, վասն զի Մինովսի Փասիփայէ կնոջ անհաւատարմութեանց օգնելուն համար Մինովս զանի իր Իքար անուն տղուն հետ բաւիղը նետել տուաւ։

Տէտալ անկէ ելնելու համար արհեստական թևեր շինել տուաւ զոր իր՝ և Իքարի ուսերուն մոմով

փակցուց ու թռչելով ազատեցաւ, բայց Իքար իր հօրը խրատը մոռցաւ և օդին մէջ շատ բարձրա-նալով՝ տաքէն մոմը հալեցաւ ու ինքը ինկաւ ծո-վը՝ որ Իքարեան կը կոչուի։

Կ'ըսուի թէ առագաստը Տէտալ հնարեց և իր թևերը առագաստին ակնարկող այլաբանութիւն մ'են, թէ շարժուն արձաններ շինած է, վասն զի նա ամենէն յառաջ պատկերներու ոտքերը իրարմէ զատեր է։

## ՅԱՍՈՆ

### Արգոնաւորդներու արշաւանքը։

Թեբացւոց Աթամաս թագաւորը իր Ինով անուն կնիկէն գրգռուելով առաջին ամուսնութենէ մ'ու-նեցած իր երկու զաւկըները՝ Փրիքսոն ու Հելլէն մեռցնել կ'ուզէր։ Այն միջոցին որ այս երկու տը-ղայք տաճարի մը մէջ պիտի մորթուէին՝ երկնա-յին ամպ մը զանոնք ծածկեց և ոսկի գեղմով խոյ մը երևան ելաւ, որ զիրենք վրան առնելով Կողքիս տարաւ։

Ծովէն անցնելու ատեն՝ Հելլէ ալիքներու ձայ-նէն վախնալով խղդուեցաւ և անոր համար նոյն ծովը Հելլեսպոնտոս կոչուեցաւ՝ այն է արդի Տար-տանէլի նեղուցը։

Փրիքսոս Կողքիս հասածին պէս՝ ոսկի գեղմը Ա-

րէսի նուիրեց։ Արէս անոր փոխարէն խոստացաւ որ զայն պահող թագաւորը երջանիկ ու անոր ժողովուրդը հարուստ պիտի ըլլայ, և նոյն ոսկի գեղմին պահպանութիւնը չորս ցուլերու և թեւաւոր վիշապի մը յանձնեց։ Գուշակը գուշակեց նաև որ թագաւորը զայն ձեռքէն կորուսածին պէս ինքն ալ պիտի մեռնի։

Նոյն միջոցին Իոլքոսի Եսոն թագաւորը իր Պէլիաս եղբօրմէն գահընկէց եղած էր։ Եսոնի Յասոն տղան քսան տարու եղածին պէս իր Պէլիաս հօրեղբօրմէն հայրական ժառանգութիւնը պահանջեց․ Պէլիաս անոր խնդիրքը մերժելու համար Յասոնի առաջարկեց որ երթայ ոսկեգեղմը իրեն բերէ։ Յասոն՝ իր քաջութիւնը ցուցնելու այս առիթը ուրախութեամբ ընդունեցաւ և՝ երկու հարիւր յիսուն դիւցազուններու հետ՝ որոնց գլխաւորներն են, Հերակլէս, Թէսէոս, Քասթոր, Պօլիկտես, Որփէոս ևն, Աթենասի ցոյց տուած օրինակին համեմատ շինուած Արգոս անուն նաւ մը հեծնելով ճամբայ ելաւ դէպ 'ի Կողքիս՝ Քրիստոսէ 1219 տարի յառաջ․ այս նաւու անունով սոյն դիւցազունները արգոնաւորդք ըսուեցան։

Յասոնի ճամբորդութիւնը տարիներ տևեց, բայց նա յաջողութեամբ իր նպատակին հասաւ նոյն իսկ Կողքիսցւոց Այետէս թագաւորին Մէտէա վհուկ աղջկան օգնութիւնով՝ որ զինքը սիրելով՝ հրաշունչ ցուլերը և վիշապը թմրեցնելու արհեստը սորվեցուց իրեն ու հետը Թեսալիա փախաւ։

Այետէս՝ իր աղջկան ու Յասոնի ետևէն ընկաւ, բայց Մէտէա զանիկա ուշացնելու համար իր Աբ-

սիրտ եղբայրը յօշելով՝ անոր անդամները ճամբուն վրայ ցանեց, որպէս զի իր հայրը զանոնք ժողվելու զբաղելով ժամանակ կորսնցնէ։

Յասոն դարձեալ Մէտէայի օժանդակութեամբ Պելիասի ձեռքէն Իոլքոսի թագաւորութիւնը առաւ, բայց միայն տասը տարի Մէտէայի հետ ապրեցաւ ու ապերախտութեամբ անորմէ բաժնուելով Կորնթոսի թագաւորին Գլաւկա աղջիկը կնութեան առաւ։ Մէտէա այս անհաւատարմութենէ կատղած Գլաւկայի անդամանդազարդ հագուստ մը ղրկեց որ մահացու թոյներով թրջուած էր։ Գլաւկա այս հագուստէն մեռնելով Յասոն զՄէտէա սպաննելու վազեց, բայց Մէտէա նոյն իսկ իր զաւակները մորթելով Աթէնք փախաւ և Յասոն ինքզինքը սպաննեց։

## ԷՏԻԲ.

Եօթն պետոց նուէրը Թեբէի առջև։

Թէբէի Լայոս թագաւորը պատգամէն լսած ըլլալով որ իր Յոկաստ կնիկէն ծնելիք տղան զինքը պիտի մեռցընէ, հրաման տուաւ զինուորի մը որ ծնելուն պէս սպաննէ զանի։

Բայց զինուորը տղուն վրայ գթալով՝ լեռ մը տարաւ զան և ոտքերէն ծառէ մը կախեց։ Նոյն միջոցին Կորնթոսի թագաւորին հովիւը Փորբաս տղուն ձայնը լսելով եկաւ ազատեց զան և Մերոպէ թագուհիին տարաւ։ Մերոպէ զան իրեն որ-

դեգրելով՝ խնամեց ու ոտքերն ալ բժշկեց՝ որոնք ուռած էին, և որու պատճառաւ նա Էտիբ կոչուեցաւ՝ որ ուռուցած կը նշանակէ։

Էտիբ մեծցածին պէս՝ իր ճակատագիրը հասկընալու համար պատգամին դիմեց և այս պատասխանը ընդունեցաւ — Էտիբ իր հայրը պիտի սպանէ ու մօրը հետ ամուսնանալով գարշելի սերունդ մը պիտի ունենայ —։ Այս գուշակութիւնը սուտ հանելու համար Էտիբ Կորնթոսէն մեկնեցաւ ու Փովկիս գնաց. բայց ճամբան՝ նեղ անցքի մը մէջ՝ մարդու մը հանդիպեցաւ որ գոռոզութեամբ առաջ անցնիլ կ'ուզէր։ Էտիբ սպաննեց զանի. այս մարդը՝ իր հայրը և Թէբէի թագաւորն էր։

Էտիբ իր ծննդեան երկիրը Թէբէ գալով՝ Սփինքսը գտաւ որ նոյն երկիրը կ'աւերէր։ Այս Սփինքսը կնիկի գլխով, շունի մարմինով ու վիշապի պոչով հրէշ մ'էր որ անցորդները բռնելով անոնց հանելուկներ կ'առաջարկէր։ Այս հանելուկները բացատրել չկրցողները իրեն ճարակ կ'ըլլային։

Քրէօն՝ Լայոսի աները՝ որ ասոր մեռնելէն ետքը կը թագաւորէր Թեբէի վրայ՝ իր աղջիկը տալ խոստացեր էր աս հրէշը սպաննողին։ Սփինքսին սովորապէս առաջարկած հանելուկը աս էր —Ո՞րն է այն կենդանին որ առտու չորս ոտքով, կէսօրին երկու ոտքով՝ և իրիկուն երեք ոտքով կը քալէ։

Էտիբ խոստացուած վարձատրութենէն քաջալերուած՝ Սփինքսին ներկայացաւ և հանելուկը լուծեց, պատասխանելով թէ այդ կենդանին մարդս էր՝ որ մանկութեան ատեն չորս ոտքով կը քալէ, երիտասարդութեան ատեն՝ որ կեանքի կէսօրն է՝

երկու ոտքով և ծերութեան մէջ երեք ոտքով այսինքն գաւազանով մը քալէ կու գայ։ Սփինքսը այս պատասխանէն յաղթուած ինքզինքը ծովը նետեց։

Այս յաղթանակին վրայ Էտիպ՝ որ Կորնթոսի թագաւորին տղան կը կարծուէր՝ Թէբէի թագաւոր ընտրուեցաւ և ամուսնացաւ իր մօրը Յոկաստին հետ որ Քրէոնին աղջիկն էր, և անորմէ երկու մանչ՝ Էտէօկլ ու Բօլինիկէն ունեցաւ և երկու աղջիկ՝ Անթիկոն և Իզմէն։

Տարիներէ ետքը Թեբէի մէջ սաստիկ ժանտախտ մը պատահելով պատգամը ըսաւ որ պիտի չդադրի այն մինչև որ Լայոսի սպաննիչը չարտաքսուի, շատ հետազօտութիւններէ ետքը Էտիպ իմանալով որ ինքը հայրասպան և պղծագործ եղած էր՝ ուստի իր թագաւորութիւնը երկու որդւոցը թողուց ու ինքզինքը կուրցընելով իր Անթիկոն աղջկան առաջնորդութեամբ ելաւ Աթէնք գնաց ու հոն մեռաւ։ Անթիկոն որդիական սիրոյ նշանաբանը մնացած է։

Էտիպի երկու որդիքը՝ Էտէօկլ և Բօլինիկէ փոփոխակի պիտի թագաւորէին մէյմէկ տարի. բայց Էտէօկլ թագաւոր եղածին պէս՝ ալ չուզեց հրաժարիլ, որով Բօլինիկէ իր աներ՝ Արկոսի Ադրաստ թագաւորը և ուրիշ վեց նշանաւոր դիւցազներ իրեն օգնութեան կանչելով Թեփէի վրայ յարձակեցաւ։ Բայց Թիրեսիաս գուշակը խոստացաւ որ Թեփացիք պիտի յաղթեն եթէ Քրէոնի Մենէկէոս տղան՝ քաղքին փրկութեան համար ինքզինքը զոհէ։ [illegible], ըսաւ վեհ իշխանը և իսկոյն

թշնամւոյն առջև ինքզինքը քաղքին պարիսպներէն վար նետեց, և Արկոսեանք յաղթուեցան իրօք։

Երկու եղբարք նորօրինակ կռւով մ՚ուզելով այս երկար կռուին վերջ տալ՝ մենամարտութեան մը մէջ զիրար սպաննեցին։ Բայց մահը անգամ իրենց ատելութիւնը չվերջացուց, վասն զի կ՚ըսուի թէ նոյն իսկ կրակին մէջ՝ ուր իրենց երկու մարմին- ները կ՚այրէին, բոցը երկուքի բաժնուեցաւ։

## Տրովայի պատերազմը։

Տրովա՝ Սքամանդրը գետին վրայ և Իտա լե- ռին մօտ շինուած քաղաք մ՚էր։ Տրովայի առա- ջին թագաւորն եղաւ Տարտանոս, որուն յաջոր- դեցին՝ Էրիքթոնիս, Տրովս՝ որուն անունով քա- ղաքն ալ Տրովա կոչուեցաւ, Իղոս՝ որ Իղիոն բերդը շինելուն Տրովա երբեմն Իղիոն ալ ըսուեցաւ, և՚ի վերջէ Լաոմէտոն և Պրիամոս։

Պրիամոսի որդին Պարիս՝ Սպարթայի Մենելաւոս թագաւորին բացակայութեան միջոցին անոր Հե- ղինէ կինը գողնալէն յառաջ եկաւ Տրովայի հռչա- կաւոր պատերազմը՝ որ Հոմերոս և Վիրգիլիոս բա- նաստեղծները երգած են, առաջինը Եղիական ու երկրորդը Ենէական անուն դիւցազներգութեանց մէջ։

Մենելաւոս իրեն եղած նախատինքին վրէժը Պարիսէն լուծելու համար բոլոր յոյն իշխաններն իրեն օգնութեան կանչեց՝ որոնց գլխաւորներն էին, Ագամեմնոն՝ Արգոսի թագաւորն ու Մենելաւոսի եղբայրը․ Նեստոր, արգոնաւորդներէ մին՝ որ մեծ փորձառութեան տէր ըլլալուն շատ յարգուած էր․ Ոդիսեւս՝ Իթակէի թագաւորը, որ իր Բենելոպէ կնոջմէն չբաժնուելու համար չուզելով պատերազմին մասնակցիլ խենթ ձեւացուցեր էր ինքզինքը․ բայց իր վարպետութիւնը երեւան հանեց Բալամէտէս․ այն միջոցին որ Ոդիսեւս յիմարաբար ծովեզերքը արօր կը վարէր ցորենի տեղ աղ ցանելով՝ Բալամէտէս Ոդիսեւսի տղան Տելեմաքը առնելով խոփին առջեւ դրաւ․ Ոդիսեւս անմիջապէս խոփը մէկդի քաշեց իր տղան չվիրաւորելու համար, որով իր կեղծիքը երեւան ելնելով ստիպուեցաւ միւս իշխաններուն ընկերանալ։

Ոդիսեւս շատ խորագէտ եւ Աթենասայ սիրելի էր, (երես 32–33)․ բայց յոյն իշխաններու ամենէն նշանաւորն էր մեծն Աքիլլէս, Լարիսայի Պէղէոս թագաւորին եւ Թէթիսի որդին, (երես 47)։ Թէթիս զԱքիլլէս անխոցելի ընելու համար ծնածին պէս զայն կրունկէն բռնելով Ստիքսին մէջ մխեր էր, անոր համար Աքիլլէս միայն կրունկէն կրնար վիրաւորուիլ։ Քիրոն յուշկապարիկը կրթեր էր զանի եւ առիւծի ուղեղով սնուցանելուն համար աս դիւցազնը աննման ոյժ մ'ունէր կ'ըսեն։

Պատգամը ըսած էր որ առանց Աքիլլէսի աջակցութեան անկարելի էր Տրովան առնուլ, եւ թէ նա պէտք էր մեռնիլ նոյն քաղքին պարիսպներուն

տակ։ Թեթիս այս գուշակութիւնն 'ի դերև հանելու համար զԱքիլլէս Լիքոմէտ թագաւորին աղջկանց քով ղրկեց աղջիկի հագուստներով։

Ոդիսևս Աքիլլէսի թագստոցը իմանալով բերկրալի պէս ծպտած Լիքոմէտի պալատը ներկայացաւ և այն տեղի կանանց ծախելու համար զարդեր ցուցուց որոնց մէջ սուրեր, սաղաւարտ մը և ուրիշ զէնքեր պահած էր։ Աքիլլէս իսկոյն զէնքերը ընտրելովը ինքզինքը ճանչցուց՝ և Ոդիսևսի ընկերացաւ։

Առնցմէ զատ յունական բանակին մէջ կային երկրորդական դիւցազուններ, որք են՝ Պատրոկլէս՝ Աքիլլէսի մտերիմը, երկու Այաները, Տիոմէտ և Փիլօկտետ։

Տրովացւոց բանակին գլուխը անցած էին, Պրիամոսի յիսուն որդիքը, որոնց ամենէ նշանաւորն էր Հեկտոր։

Յունաց բանակը որ հարիւրական հոգի կրող հազար նաւէ կը բաղկանար, գնաց Բէովտիայի քաղաքներէն մէկուն նաւահանգիստը սպասեց յաջող հով մը չգտնելուն, բայց Կալքաս գուշակը իմաց տուաւ որ յաջող հով մը չպիտի կրնայ գտնել եթէ Ագամեմնոն իր Իփիժէնի աղջիկը Արտեմիսի զոհ չմատուցանէ։ Ագամեմնոն երկար ատեն ընդդիմացաւ իր սիրելի զաւակը զոհելու, բայց աստուածներէն և բանակին դժգոհութենէն վախնալով անոր մահը վճռեց։ Սակայն Արտեմիս այս խեղճ հօր վրայ գթալով՝ անձամբ Իփիժէնին ազատեց այն միջոցին որ քրմապետը զան պիտի մորթէր և անոր տեղ վայրի այծեամ մը դնելով Ի-

Փէժինին իրեն քրմուհի ըրաւ։ Ասոր վրայ յաջող հովմ'ալ ելաւ և յունաց բանակը Տրովադայի եզերքը հասաւ։

Նոյն իսկ աստուածները այս հռչակաւոր պատերազմին մասնակից եղան, ոմանք յունաց կողմը բռնեցին և ոմանք Տրովացւոց։ Հերա և Աթենաս յունաց կուսակից էին, և Աստղիկ Տրովացւոց։

Հերայի և Աթենասի Տրովացւոց դէմ ունեցած հակառակութեան պատճառն էր Թետիսի և Պէղէոսի հարսնիքը (երես 47), ուր ամեն աստուածները հրաւիրուած էին բաց 'ի Արէսէն և Պելլոնայէն, որոնք վրէժխնդրութեամբ սեղանին վրայ ոսկի խնձոր մը նետեցին գեղեցկագունին ուղղուած. այս խնձորը Ողիմպոս աստուածաբնակ լեռը տակնուվրայ ըրաւ, վասն զի ամեն մէկ դիցուհի ինքզինքը գեղեցկագոյնը կը համարէր, մանաւանդ Հերա, Աթենաս և Աստղիկ։ Արամազդ կռուին վերջ տալու համար երեք դիցուհիները Իտա լեռը՝ Տրովայի Պրիամոս թագաւորին Պարիս տղուն ղրկեց որ Փռիւգիայի ամենագեղեցիկ հովիւն էր։

Գեղեցկութեան այս մրցանակը ստանալու համար Հերա՝ Պարիսի հարստութիւն և զօրութիւն խոստացաւ, Աթենաս՝ գիտութիւն և առաքինութիւն, իսկ Աստղիկ՝ աշխարհիս ամենէն գեղեցիկ կինը։ Պարիս խնձորը Աստղիկին տուաւ՝ որով միւս դիցուհիները բարկացան և մաքերնին դրին Տրովայի կործանումով իրենց վրէժը լուծել։

Պատերազմի սկիզբը յաջող էր յունաց համար, վասն զի իրենց զօրապետները միաբան էին, բայց շատ չտեւեց Ագամեմնոնի և Աքիլլէսի մէջ վէճ մը

ծածկեցաւ կողոպուտի մը համար զոր Ագամեմնոն անիրաւաբար իրեն կը պահէր փոխանակ Աքիլլէսի տալու։ Ասոր վրայ Աքիլլէս իր վրանը կը քաշուի ու չպատերազմիր, որով պատերազմի բաղդը Տրովացւոց կողմը կը դառնայ. յոյները հետզհետէ կը յաղթուին, կը ջարդուին, մինչև անգամ Աքիլլէսի մտերիմը՝ Պատրոկլէս՝ Պրիամոսի Հեկտոր որդէն կ'սպաննուի։ Աքիլլէս անոր դիակին առջև՝ Ագամեմնոնի դէմ իր քէնը կ'մոռնայ և Հեկտորի ապարէզ կը կարդայ իր բարեկամին վրէժը լուծելու համար։

Հեկտոր Աքիլլէսի հետ մենամարտելով դիւցազնաբար կը մեռնի խնդրելով որ իր դիակը ընտանիքին ղրկուի։ Սակայն Աքիլլէս անողոք կ'մնայ և զայն իր կառքին ետին կապելով երեք օր կը պտըտցընէ Տրովայի պարիսպներուն բոլորտիքը՝ և հազիւ Պրիամոս հազար թախանձանքով կը յաջողի ետ առնուլ իր որդւոյն յօշոտած մարմինը։

Հեկտորի մահը մեծ վհատութիւն կը ձգէ Տրովացւոց մէջ. Պրիամոս զինադադար մը կ'առաջարկէ անոր թաղման հանդէսները կատարելու որ յոյներէն կ'ընդունուի։ Այս առթիւ ասոնք ալ քաղաքը մտնելու արտօնութիւն կ'ստանան ուր Աքիլլէս Պրիամոսի Բօլիքսէնի աղջկան սիրահարելով զայն կնութեան կը խնդրէ։ Խնդիրքը կ'ընդունուի, բայց հարսանեաց հանդիսին մէջ Պարիս դաւօրէն զԱքիլլէս նետով կը զարնէ կրունկէն և Աքիլլէս որ միայն անկէ խոցելի էր՝ կը մեռնի իսկոյն։

Մինչ այս մինչ այն ինն տարի անցեր էր և դեռ Տրովա կ'դիմանար. յոյները կ'իմանան որ Աթենասայ

երկնընկեցիկ մէկ արձանը՝ Պալլատիօն, քաղաքը կըպաշտպանէ։ Ոդիսեւս և Տիոմէտ գետնափորէ մը մինչև դիցուհիին խորանը հասնելով արձանը կը գողնան՝ որով Տրովա միայն իր քաջերու պաշտպանութեանը կը մնար․ Ոդիսեւս այդ քաջերն ալ խաբելու հնարքը կը գտնէ։

Յունական բանակը յանկարծ աներևոյթ կ'ըլլայ՝ իբրև թէ տասնամեայ պաշարումէ մը տաղտկացած, իրենց նաւերը Թենեդոս կղզիին ետին կը պահուին և Տրովայի պարիսպներուն տակ միայն փայտէ ահագին ձի մը կը թողուն իբր հատուցում Աթենասի՝ Պալլատիոնը գողնալնուն համար։ Տրովացիք միամտաբար ներս կ'առնուն ձին, որու կողերուն մէջ յոյն զինուորներ պահուած էին, և որոնք գիշերը դուրս ելնելով քաղաքը հրոյ և սրոյ ճարակ կ'ընեն։ Աքիլլէսի Պիւռոս տղան իր ձեռքով ծերունի Պրիամոսը կը մեռցընէ՝ և Տրովա իսպառ կը կործանի Քրիստոսէ 1209 տարի յառաջ։

Սակայն Տրովայի պատերազմը և յաղթութիւնը շատ սուղի կը նստի յոյներուն ու միայն ծերունի Նեստորը յաջողութեամբ իր հայրենիքը կը դառնայ։

Ագամեմնոն իր Արգոսի գահը և Կլիթեմնեսթրա կինը՝ Եգիստի ձեռքը, իր Օրէստէս տղան մօրը ձեռքէն փախած կը գտնէ՝ և նոյն ինքը կնոջմէն կ'սպաննուի։

Օրէստէս Արգոս կը վերադառնայ և իր մայրը սպաննելով հօրը վրէժը կը լուծէ․ բայց իր մայրասպանութեան վրայ խիղճէն տանջուելով աստուածներու պատգամ կը հարցնէ․ աստուածները կը հրամայեն իրեն Տօրիս երթալ և անկէ Արտե-

միւս արձանը բերել։ Օրէստէս սոյն պատգամը ՚ի գործ դնելու համար իր սերտ բարեկամ Բիլատի հետ ճամբայ կ'ելնէ. բայց Տօրիսի Թագաւորը՝ Թօաս, հոն եկող ամեն օտարականները բռնելով Արտեմիսի զոհ կը մատուցանէր։ Ուստի Օրէստէս իր բարեկամին հետ հոն հասածին պէս՝ բռնուելով Արտեմիսի տաճարը կը ղրկուի զոհուելու։ Անատեն երկու բարեկամներու մէջ ազնիւ կռիւ մը կ'սկսի. Բիլատ՝ դահիճ քրմուհիին առջև կը պնդէ որ ինքն է Օրէստէս և ինքը պէտք է մեռնիլ յառաջ։ Օրէստէս կը բողոքէ՝ և այն միջոցին որ քրմուհին նուիրական դանակը կը վերցընէ զանի մորթելու՝ կանկ կառնու յանկարծ իր եղբայրը ճանչնալով. Օրէստէս ալ իր Իփիժէնի քոյրը կը ճանչնայ մէկէն. զոր Արտեմիս իրեն քրմուհի ըրած էր (երես 68) և զոր մէյմ'ալ տեսնելու յոյս չունէր։ Երկու բարեկամները այս տեսարանէն յառաջ եկած շփոթութենէն օգուտ քաղելով Թօասը կ'սպաննեն և Իփիժէնին առնելով Յունաստան կը դառնան։

Ոդիսեւս տասը տարի ծովէ ծով կը շրջի Իթակէ չդարձած։ Հովերը զինքը Սիկիլիա կը տանին ուր Բօլիֆէմ անուն կիկլօպին ձեռքը կ'ըյնի իր վեց ընկերներով։ Իթակէի թագաւորին գործը լմնցած է եթէ հնարագիտութեամբ վտանգին առջևը չառնէ, ուստի նա Տրովայի պատերազմին պատմութիւնը ընելով կը քնացընէ զանի և կրակ դարձած երկաթով մը անոր միակ աչքը կը կուրցընէ։ Բօլիֆէմ կ'արթննայ սոսկալի ձայներով, բայց աչքը կոյր է և չկրնար իր թշնամիները բռնել, որոնք շուտով իրենց նաւերը դառնալով կղզիէն կը հեռանան։

Կիկլոպին ձեռքէն ազատելէն ետքը՝ Ոդիսեւս Սիրէնաներու ձեռքէն ալ կրցաւ պրծիլ (երես 32), բայց աւելի դժուարութեամբ կրցաւ հեռանալ Կալիպսօ յաւերժահարսին կղզիէն ուր եօթ տարի մնաց։

Մինչդեռ Ոդիսեւս այսպէս ծովերուն և ճակատագրին դէմ կը մաքառէր, իր կինը Բենելոպէ անոր վերադարձը կ'սպասէր համբերութեամբ․ շատերը զինքը գլխէ հանել ուզելով կը պնդէին թէ Ոդիսեւս մեռած էր և թէ պէտք էր նոր ամուսին մը ընտրել իրեն․ Բենելոպէ խոստացած էր այս ընտրութիւնն ընել իր սկսած մէկ ձեռագործը լմնցածին պէս, և որպէս զի չլմննայ այն՝ ցորեկը գործածը գիշերը կը քակէր, մինչև որ Ոդիսեւս գալով իր բոլոր ոսոխները կ'սպաննէ և խաղաղութեամբ կը թագաւորէ իր կղզւոյն վրայ։

Իսկ իրենց հայրենիքի կործանումէն ազատող Տրովացիք՝ Ենէասի առաջնորդութեամբ Իտալիա կ'երթան և Լացիոն կոչուած երկիրը կ'բնակին։

---

## ԴԵՒԿԱԼԻՈՆ

Դեւկալիոն՝ Պառնաս լերին մօտ Թեսալիայի վրայ կը թագաւորէր երբ ջրհեղեղը տեղի ունեցաւ։ Բայց Արամազդ զայն իր Պիւռռա կնոջը հետ փրկեց ու իրենց պզտի նաւակը գնաց Պառնաս լերին վրայ նստաւ։ Ջուրերը քաշուելուն պէս՝ ասոնք Աստրէայի մօրը՝ Թեմիսին հարցուցին թէ մարդկային սերուն-

դլին աճման համար ինչպէտք չէին ընել։ Թեմիս պատգամ տուաւ որ գլուխնին ծածկելով իրենց մօրը ոսկորները ետեւնին նետեն։ Դեւկալիոն մտածելով գտաւ որ իրենց մայրը երկիրն էր ու ոսկորները քարերը, ուստի Թեմիսի պատուէրին հետեւեցաւ ու իր նետած քարերըէրիկ մարդերու փոխուեցան իսկ կնոջը՝ Պիւռային նետածները կիներու։

## ՀՆԴԻԿ ԱՍՏՈՒԱԾՆԵՐ

Ամեն բանէ առաջ Բարապրահման կար որ հնդկական երրորդութեան՝ Թրիմուրթիի՝ մայրն եղաւ։

1 Բրահմա՝ ստեղծիչ զօրութիւնն է և երկրի նշանաբանը։

2 Վիշնու՝ բեղմնաւորող ջուրն է, վերանորոգիչ տարրը՝ որ աշխարհիս փրկութեան համար յետոյ կը մարմնանայ։

3 Սիվա՝ աւերիչ հուրը՝ որ միանգամայն կեանքն ու մահը, լոյսն ու խաւարը, բարին ու չարն է։

Թրիմուրթի՝ կը նկարագրուի եռագլխի մարդու մը նման և կը ներկայացուի ՕՄ միսթիքական անունով որ երեք սանսքրիթ գրերէ կը բաղկանայ։

Մեծն Բրահմա կամ Բարապրահմա ոչ սահման ունի ոչ պատկեր. ամեն տեղ է ու ամեն բանի մէջ։

Հնդկական փիլիսոփայութեան համեմատ այս աշխարհս լոկ երազ մ՚է որու առաջին պատճառն է Բրահմայի կամքը, և երկրորդը Մայան՝ մայր երազներու և ամեն էակներու։ Մենք ամենքս ալ կ՚ապրինք երազի մը մէջ՝ որու դէպքերը մեր գործարաններու արդիւնքն են։

Հնդիկներէ պաշտուած կովը Մայայի՝ կամ իգական սեռին սկիզբն է։

Վիշնու՝ ինն անգամ մարմին առնելով աշխարհք եկած է, ձուկ, կրիայի, վայրենի խոզի, գաճաճի

Եւ կերպարանքով, տասներորդ անգամ մ՚ալ պիտի գայ ճերմակ ձիու փոխուած ։ Այս հնդկական Պեգասոսը երեք ոտքերուն վրայ կեցած է, եթէ չորրորդն ալ գետինը դնէ աշխարհքը անդունդին մէջ պիտի իյնի ու կործանի, առայժմ նա կաթէ ծովի մը մէջ կը քնանայ հինգգլխի օձի մը վրայ ։

## ԵԳԻՊՏԱԿԱՆ ԱՍՏՈՒԱԾՆԵՐ

Օզիրիս՝ Արամազդի որդին՝ Եգիպտոս հաստատուեցաւ եգիպտացիները կրթելու իր Իզիս քրոջը հետ՝ որ միանգամայն իր կինն էր և անոնց վրայ թագաւորեց ։

Իզիս ցորենն ու գարին գտաւ, Օզիրիս երկրագործական գործիները հնարեց, ամուսնութեան հիմնադրութիւնը հաստատեց, ու քաղաքական ընկերութեան հիմը դրաւ ։ Այգի տնկել սորվեցուց և Թէբէ քաղաքը շինելով զայն նուիրեց Ամմոնեան Արամազդին ։

Յետոյ բոլոր աշխարհքը կրթելու համար անոր տիրել ուզելով շատ զօրքով ճամբայ ելաւ իր փոխանորդութիւնը Իզիսին թողլով և անոր առաջին պաշտօնեայ տուաւ Արգոսը՝ որ Եգիպտոսի գլխաւոր քաղաքներու մէջ հարիւր ոստիկան կարգելուն համար Արգոս հարիւրաչեայ ըսուեցաւ ։

Օզիրիսի բացակայութեան ատեն՝ իր Թիֆոն կամ Թըֆան եղբայրը՝ գահը յափշտակել ուզեց, սակայն չյաջողեցաւ, այլ յետոյ Օզիրիսի վերադարձին խնջոյքի մը մէջ խաբէութեամբ զանի բռնելով՝ Նեղոսին մէջ նետել տուաւ ։

Իզիս իր ամուսնոյն մահը լսելով անոր մարմինը փնտռեց և գտաւ Փիւնիկէի ափերուն վրայ և իր Օրիւս տղուն հետ Թըֆանին վրայ յարձակելով անոր յաղթեց և Օրիւս իր հօրը գահը նստաւ։

Իզիս և Օզիրիս երկրագործութեան արհեստը սորվեցնելնուն համար՝ եգիպտացիք եզն ու կովը նուիրեցին անոնց։

Օզիրիսը ներկայացնող կովը Ապիս կը կոչուէր և պէտք էր սև ըլլալ՝ ճակտին վրայ ճերմակ նշանով մը։

Իզիսի և Օզիրիսի առասպելը ռամկին համար անիմանալի և միայն քուրմերն թափանցելի էր։ Որովհետև Նեղոսի ափունքներուն վրայ Իզիսէ և Օզիրիսէ յառաջ օձեր, կոկորդիլոսներ և չորքոտանիներ պաշտուած էին, Իզիսի և Օզիրիսի կրօնը երկրորդական տեղ մը կու տայ անոնց և հոգեփոխութիւնը սոյն կրօնին գլխաւոր մասերէն մէկը կ'ըլլայ։

Իզիս՝ Եգիպտոսի անձնաւորութիւնն է, Օզիրիս՝ Նեղոս բեղմնաւորիչ գետին. Թըֆանը անապատի խորշակն է որ բոյսերը կը չորցնէ և ամեն կողմ աւեր ու սուգ կը սփռէ։ Այն միջոցը յորում Թըֆան եղբօրը գահը կը յափշտակէ՝ չորութեան ամիսներուն կը պատասխանէ։ Օրիւս Ապողոնն է ամառնային արևադարձին մէջ՝ և ասոր Թըֆանի վրայ տարած յաղթանակը՝ Նեղոսի երկրորդ ողողումը կը նշանակէ։

Ինչպէս հնդկական նաև եգիպտական դիցաբանութեան մէջ կը գտնենք կենդանարար կրակին և բեղմնաւորիչ խոնաւութեան և երրորդութեան գաղափարները։

Օզիրիս արեգակնային տարին ալ կը նշանակէ և այն ատեն Իզիս լուսին՝ և իր կովի եղջիւրները գիշերային աստղին մահիկներ կ'ըլլան ։ Այս պատճառաւ այս չորսին պաշտօնը իրար կը խառնուին ։

Ասոնցմէ զատ երկրորդական և երրորդական աստուածներ ալ կային որոնց գլխաւորներն են՝ Ֆրէ, Ֆթա, Սէմ-Հերքիւլէս որ տարիին անձնաւորութիւնն է ու իր 12 քաջագործութիւնները 12 ամիսները կը նշանակեն ։ Հերմէս՝ գիտութեանց ուսուցիչը և Շնիկ աստեղ անձնաւորութիւնն է ։

## ԱՍՈՐԻՈՑ ԵՒ ԲԱԲԵԼԱՑԻՈՑ ԱՍՏՈՒԱԾՆԵՐ

Ասորւոց ամենէ մեծ աստուածն էր Իլան կամ Ասուր որմէ բոլոր աստուածները կը ծագէին, յետոյ Բէլ՝ որ արև կը նշանակէր կամ այն բարեբար աստղին ճառագայթներէն բեղմնաւորուած բնութիւնը ։ Երկրորդական աստուածներն էին Մելիտա (լուսին), Աստարտէ ևն ։

Բաբելացիք ասորւոց կրօնը ունէին և մասնաւորապէս կը յարգէին Բէլը ։ Կ'ըսուի թէ Բաբելոնի աշտարակը որ ամենահսկայ և հիանալի շէնք մ'էր՝ ասոր տաճարն էր ։

Քաղդէացիք իրենց քուրմերն էին և Բէլի տաճարէն աստղեր դիտելով գտան աստղագիտութիւնը, որմէ սխալ գիտութիւն մ'ալ յառաջեկաւ աստղաբաշխութիւն անունով ։

## ՊԱՐՍԻՑ ԵՒ ՀԱՅՈՑ ԱՍՏՈՒԱԾՆԵՐ

Պարսիկները իրենց իմաստութեամբ շատ հռչակաւոր էին ։ Արևը կը պաշտէին և մասնաւորապէս կրակը կը յարգէին ։ Այս նուիրական կրակին պահ-

դաւանութիւնը՝ զոր երկինքէն իջած կը կարծէին մոգերուն յանձնուած էր, որոնք պարսից դիտուններն ու քահանաներ էին ։

Պարսիկները գերագոյն և յաւիտենական ա տուած մը կը ճանչնային՝ Զրուանը—Ակերէն՝ այսինքն անսահման ժամանակը ։ Այս աստուածէն, որ ան սկիզբն ու անվախճան է, բխած են Որմիզդ և Ահրիման ։

Որմիզդ բարւոյն և լոյսին սկիզբն էր, բոլոր բարեաց աղբիւր ։ Որմիզդը մարդկային սեռը կը սնուցանէ, կը պահպանէ, ու բոլոր էակներու կեանք կու տայ․ Իզէաները իր հրեշտակներն են ։

Ահրիման չարին ու խաւարին աղբիւրն է և Որմիզդի հակառակորդը ։ Ամեն ոճիրներու, հիւանդութեանց, մորիկներու ու ժանտախտի հայրը, տէվերը իր՝ հրեշտակներն են ։

Մէհր կամ արեւու ոգին, Որմիզդի ծնունդն է, ու անոր կը հպատակի․ հազար ականջ և տասը հազար աչք ունի, որով տիեզերքի մէջ անցած դարձածը լաւ կը լսէ և կը տեսնէ ։

Պարսից կրօնին վարդապետութիւնները իրենց նուիրական գիրքին՝ Զէնտավէստային մէջ արձանագրուած են, զոր մոգերու կրօնքին հիմնադիր Զօրօաստրը շինած է ։ Այս նշանաւոր մարդը Մարաց Կիւրոս թագաւորը գահը չելած՝ գրեթէ Քրիստոսէ 560 տարի յառաջ ծնած է ։

Մեր նախնեաց պաշտած աստուածներու վրայ շատ տեղեկութիւն չունինք, միայն քանի մը պատմագիրներ՝ մասնաւորապէս Ագաթանգեղոս և Խորենացի յիշած են,

1 Ահուրամազդա (ամենատէր՝ հուր իմաստութեան) Պարսից Որմիզդը, կամ Զեւս՝ այսինքն Արամազդ որու մեհեանը Դարան գաւառին մէջ կը գտնուէր։

2 Միհր՝ զոր Ագաթանգեղոս Արամազդի տղան կը համարի և որ նոյնչափ պաշտուած էր, ասոր հարուստ մեհեանը կը գտնուէր բարձր հայոց Դերջան գաւառին Բագառիճ գեղը։ Միհր կամ Միթրա՝ զենտ լեզուով արև կը նշանակէ և յունաց Ապողոնը, եգիպտացւոց Օրիսը և բաբելացւոց Բէլը կը համարուի։ Միհրի մեհեանները՝ որոնց մէջ միշտ կրակ կը վառէր, կը գտնուէին Արմաւիր և Բագաւան որ հիմա Բագու կ՚ըսուի։ Միհրդատ անունը Մէհր և տուր բառերէ կը բաղկանայ և կը նշանակէ Միհրատուր, ինչպէս որ հիմա կ՚ըսենք աստուածատուր եւն։

Միհրի մեհեաններուն մէջ կը պաշտուէին նաև Արևն ու Լուսինը, զորս Պարսից նման՝ Արամազդայ աչքեր կը համարէին։

3 Անահիտ՝ որ յոյներու Արտեմիսը և լատինացւոց Տիանան չէ ամենևին, այլ տարբեր աստուածուհի մը, այս սխալին տեղի տուած է ըստ երևութի՝ Անահիտ անունին աջէն ձախ հեգելով Տիանա կարդացուիլը. հայոց Անահիտը, կ՚ըսէ Գ. Էմին, տարբեր աստուածուհի մ՚է որ Ագաթանգեղոսի ըսածին նայելով մեր նախնեաց պահապանը կը համարուէր, Արամազդի ցեղէն՝ և առաքինութեան ու համեստութեան մայրը։ Անահիտ խիստ յարգի էր. Պլինիոս կ՚ըսէ թէ (Բնական պատմ. Լ. Գ. 24) առաջին անգամ շինուած ոսկի կուռքը՝ Հայաստանի մէջ Անահիտինն է, իր մեհեանները

կը գտնուէին Բարձր հայոց Եկեղեաց գաւառը․
Արտաշատ և Տուրուբերան նահանգին Աշտիշատ
քաղաքը։

4 Աստղիկ՝ որու գլխաւոր մեհեանը կը գտնուէ
Աշտիշատ։

5 Նանէ՝ կը պաշտուէր Բարձր հայոց Եկեղեա
գաւառի Թիլ աւանը։

6 Բարշամին՝ որու մեհեանը Դարանաղիք գաւա
ռին Թորդան աւանը կը գտնուէր։ Կ՚ըսեն թէ ձը
մեռուան մէջ Վահագն աստղը յարդ գողնալով
երկինքն ՚ի վեր փախաւ, և ճամբան յարդերը
թափելով յարդգողի ծիրը շինեց, այն է՝ ծիր կաթին
Տիգրան ասոր փղոսկրէ, բիւրեղէ ու արծաթէ շի
նուած արձանը Թորդան տարաւ։ Այս արձանը
Բաբելոնէ եկած կը համարուի։

7 Տիր՝ որ վերինին պէս ասորի կամ բաբելակա
ստուած մը պէտք է ըլլալ, յունաց Մերքիւրիոս
և Եգիպտացւոց Հերմէսն է, վասն զի Տիր՝ քուր
մերու ուսուցիչը, Արամազդայ գրագիրը՝ և հոգի
ները դժոխք կրողն էր։ Պ․ Էմինը կ՚կարծէ որ Տիր
դիւթանք ռամկական խօսքը՝ Տիրը տանի ըսելու տեղ կը
գործածուէր։ Այս կարծիքը հաւանական է, բայց
մենք աւելի կ՚կարծենք որ այդ խօսքը Տիրը տանի
է և ոչ թէ Տիրը, որ դարձեալ Տիրի կ՚յարմարի
վասն զի Տիր հոգիները դժոխք կրողն էր, (տես
երես 17)։ Տրդատ անունը Տիր և տալ բառերէ շի
նուած է և կը համապատասխանէ կերպով մը ար
դի Տիրատուր անունին։ Տիր՝ բաբելացւոց լեզուո
Նապուխ ըսուած է․ ասոր արձանը Աբգար Մծբի
նէն Եդեսիա դրկեց։

Քրիստոսէ 114 տարի առաջ Արտաշէս Ա. իբրև կողոպուտ Յունաստանէն բերած աստուածները Արմաւիր քաղաքը դնել տուաւ, որոնք պղինձէ և ոսկեզօծ էին, Արտեմիս, Հերակլէս, Արամազդ, Աթենաս, Հեփեստոս և Ափրոդիտէ, զորս Դարանաղիք գաւառին Անի ամրոցը դրաւ իրենց քուրմերովը։ Յետոյ իր որդին Տիգրան Բ. զանոնք ուրիշ տեղեր ղրկեց, օրինակի համար Արամազդը՝ Անի, Աթենասը՝ Թիլ՝ Նանէ աստուածուհիին մեհեանը, Արտեմիսը՝ Երիզա Անահիտի մեհեանը, Հեփեստոսը՝ Բագաառինջ գիւղը Միհրի մեհեանը, Ափրոդիտէն՝ Տարոնի Աշտիշատ գիւղը Աստղիկի մեհեանը։

Ասոնցմէ զատ մեր նախնիք Ասորի աստուածներ ալ պաշտած են զորս Աբգար Մծբինէն Եդեսիա տարաւ. Նաբովկ կամ Նապուխ, որու վրայ Տիր անունով խօսեցանք, Բէլ, Բաթնաքաղ և Թարաթա կամ Ատարատէ՝ որ կնիկի կերպարանքով և ձուկի պոչով կը նկարագրուէր։

Յունաց և հռոմէացւոց պէս մենք ալ կիսաստուածներ կամ դիւցազուններ պաշտած ենք, որոնցմէ միայն Վահագն կը յիշուի։ Ասոր վրայ երգուած երգերը Խորենացին ականջովը լսած էր, կը պատմէին որ նա վիշապներու հետ պատերազմելով անոնց յաղթեր ու Հերակլէսի քաջագործութեանց նման քաջութիւններ ըրած է։ Վահագն նաև Վիշապաքաղ ըսուած է անշուշտ պատմութեան համեմատ իր հայրենիքը հրէշներէ մաքրելուն համար. իր մեհեանը կը գտնուէր Աշտիշատ գիւղը։ Հաւանական է որ մեր նախնիք կը պաշտէին նաև Հայկը՝ որ Օրիոն համաստեղութեան կարգը դրած էին։

